МЕЖДУНАРОДНЫЙ ДВУЯЗЫЧНЫЙ РУССКО-АРМЯНСКИЙ ЕЖЕМЕСЯЧНЫЙ ЖУРНАЛ

# Գործարար

ГОРЦАРАР

ОКТЯБРЬ-ДЕКАБРЬ № 10-12 (162-164) 2012 г.



«Կոմպաս Բենդ» համույթի անդամները՝

Արամը, Դավիթը, Աբրահամն ու Արշավիրը:

Քվեարկե՛նք Հայաստանի օգտին

# Российский бизнесмен открыл крупнейший в Армении торгово-развлекательный центр (фоторепортаж)















Президент Армении Серж Саргсян 20 октября принял участие в официальной церемонии открытия крупнейшего торгово-развлекательного центра «Dalma Garden Mall» в Ереване.

В церемонии открытия участвовали мэр Еревана Тарон Маргарян и директора компании «Ташир групп», владелец центра, известный российский предприниматель Самвел Карапетян. Президенту представили занимающий общую площадь в 45,5 тыс. кв.м. и стоимостью в $50 млн. торгово-развлекательный центр, который построен в соответствии с самыми высокими требованиями.

Из общей территории «Далма Гарден Мол» 32,6 тыс. кв.м. будет использоваться в торговых целях. В торговом центре будут находиться супермаркеты бытовых товаров и бытовой техники, модные бутики, гипермаркет, кинозалы, игровые помещения, кафе, рестораны, центры быстрого питания и так далее.

*ИА REGNUM.*

# Հինավուրց ազգի նոր հերոսները

**Ոչ մի հաղթանակ չէր լինի, եթե մենք չունենայինք այս հրաշալի ֆիդայի, կամավորական տղաներին, որոնցով սկսեցինք: Կռվեցին, զոհվեցին, իրենց արյունով երկիրը պահպանեցին:**

***Վազգեն ՍԱՐԳՍՅԱՆ***

Ճիշտ է ասված, որ մարդկային բնավորությունը հաճախ ձևավորվում է ոչ թե միջավայրի, ապրած կյանքի թելադրանքով, այլ երակներում հոսող արյան որակով ու դրա կանչով:

Հինավուրց ազգի մերօրյա հերոսների պապերը 1915 թվի կոտորածի «որդիներն են», և նոր հերոսները ծնվել են, որ լինեն նրանց նման տաք սրտի, կրակի հետ շփման ոգու և անմահության ծնունդներ:

Այդպիսիք վերահաս վտանգի գիտակցողն ու ընդվզման ոգու ասպետներն են, անհողդողդ վճռականությամբ, ականջալուր նախնյաց կանչին:

Անաղարտ արյան այդ ասպետներից է Ռազմիկ Պետրոսի Մարադյանը:

Ուխտ ուներ արած Ռազմիկը, վաղուցվա ուխտ: Եկել էր ժամանակը, եղեռնի նահատակ, մարդկության հանդեպ մեծագույն այդ ոճրագործության տառապյալ նախնիների վրեժն առնելու ժամանակը:

Երիտասարդության սեմը ոտք դրած Ռազմիկ Մարադյանը բանակի ոչ միայն զինվորն է, այլ բանակի ծննդյան ու կայացման երախտաշատ գործի գործուն մասնակիցը, որ հավատարիմ մնաց իր երդմանը՝ պաշտպանել հայրենիքը, վերահավաքել հայրենի հողն ու ծառայել այդ հողի վրա ապրող ժողովրդին:

Նա, հայրենանվեր գաղափարների ծանր պատասխանատվությունը ուսած, միշտ կանգնում է մնացել ազատամարտի առաջին դիրքերում՝ ցույց տալով բոլորիս իր նման կորյունների արյուն ու քրտինքով պաշտպանած հայրենիքի իրական արժեքը:

1989 թ.-ին ազատամարտիկների շարքերում, Երասխավանի մարտական գործողությունների բոհում, ազատամարտի հայրենապաշտ ավազանում մկրտվելով (սկզբում գաղտնի, պարզ պատճառներով), արցախյան ազատամարտի խիզախ, իր արտաքինով ամրահասակ զինվորը երկար ամիսներ սարերում ու անտառներում, արևից խանձվելով, ցրտից սառցակալելով, վատառողջ ու խոցված լինելով շարունակում էր մնալ Ոսկեպարի, Կիրանցի, Բերքաբերի, Կոթիգեղի, Պառավաքարի, Այգեպարի պաշտպանական դիրքերում:

Քաջությունն ու խիզախությունը փոխարինում են բերդապարիսպներին:

1992 թ.-ից Ռազմիկ Մարադյանը Լոռվա «Նժդեհ» («Լոռվա գծեր»), «Զորավար Անդրանիկ» ջոկատների իր զինակից ընկերների հետ բերդապարիսպի պես կանգնեցին Հադրութի շրջանի պաշտպանական գործողություններում (էդիլլու) (Ուխտաձոր), Հախիլլու, Ակնաղբյուր, Մելիքաշեն, Ցոր, Բլութան, Խրմնջուխ):

Այնուհետև միանալով Լեոնիդ Ազգալյանի ջոկատին՝ արդեն Մարտակերտում էին (Լենինավան, Կարմիրավան, Մաղավուզ, Մադաղիս, Մոխրաթաղ, Մեծ Շեն):



**Ռազմիկ Մարադյան**

Մոխրաթաղում էր, որ վիրավորվեց ոտքից, չթողեց դիրքերը, դեռ ավելին, զինակիցների հետ տեր դարձավ մեծ զինավարի (տանկ, զրահամեքենա, մեծ քանակությամբ այլ զենք ու զինամթերք):

Մարտակերտից հետո Կիրովականում Գևորգ Գյուլազյանի (ԱՍԱԼԱ-ի «Վան» գործողության մասնակից) կազմավորած «Մեծն Մուրադ» ջոկատի կազմում (Ռազմիկը հետագայում նույն ջոկատի փոխհրամանատարն էր, այնուհետև հրամանատարը) Առաձորի մերձակա գյուղերի՝ Հարությունագոմերի, Վաղուհասի, Կճողութի, Ալիշանի, Կիչանի, Չլդրանի, Դրամբոնի պաշտպանական դիրքերում էին:

Այլ կերպ չէր կարող լինել, քանզի նրա երակներով է հոսում այն նույն արյունը, ինչոր ազգակցի՝ «ԱՍԱԼԱ»-ի վրիժառու Մկրտիչ Մարադյանինը:

Ցավ ունի սրտում, դեռ վրեժի ծարավ կա նրա հոգում, երբ հիշում է նահատակ ընկերներին.

– 1992 թ.-ի ապրիլի 2-ին Քելբաջարում լռեցի 30 տղաների հետ թշնամու ծուղակն ընկանք, 9 զոհ ունեցանք՝ 7-ը Վանաձորից (Լիպարիտ Ղուլյան, Խաչատուր Հարությունյան, Էդվարդ Պետրոսյան, Սերյոժա Մարգարյան, Գագիկ Խոսրովյան, Ահարոն Գևորգյան, Ահարոն Բաղդասարյան), 2-ը Ալավերդուց (Հովիկ Մուրադյան, Հովիկ Արզումանյան), 18 վիրավոր (ինքն էլ ծանր վիրավորների մեջ, խոցված երկու տեղից):

Այսօր էլ կսկիծը սրտում կարողանում է միտքն ամփոփել երկու նախադասությամբ.

– Կան ուժի, կորովի, կենսականության և խանդավառության ներկայություններ, որոնք շարունակում են մնալ մահվանից հետո էլ: Եվ մարդու անմահությունը կայանում է հավիտենական ներկայության մեջ:



**Ռազմիկ Մարադյանը մարտական ընկերների հետ**

Բայց և ՀՀ, ԼՂՀ մարտական ծառայության,

Չ4

Գնահատանք

# Չորս փասնամյակ սիրած գործին խոնարհ ծառա

Կոչումներ կան, որ մարդկությանը տրվում են ի վերուստ, քանզի այդ կոչումը տրվում է կրթելու ու դաստիարակելու ամենաթանկ էակին՝ երեխային: Հայ կրթարվեստի զարգացման գործում, բազում հայկական կրթական կենտրոնների նման իր ավանդն ունի Վանաձորի գեղարվեստի դպրոցը: Վանաձորյան արվեստագետ-ուսուցիչները կրթելու սուրբ գործին խոնարհ ծառա կանգնած ծառայել ու ծառայում են նրան մեծագույն սիրով ու անձնվիրաբար:

Դժվար է իմացության հարուստ պաշարով, իմացածը սերունդներին ավանդելու պատասխանատվության գիտակցումով ու նվիրվածությամբ վաստակաշատ մանկավարժին ներկայացնել լրագրողական մի փոքրիկ դիմանկարի սահմաններում: Բայց և անհրաժեշտ է, քանի որ մեր ժամանակներին բնորոշ է դարձել «չնկատել» կողքինի արժանիքներն ու վաստակը, ըստ արժանվույն գնահատել այն, աջակցել: Ոչ արժանիները «այսպես» թե «այնպես» հարթում են իրենց ճանապարհները: Մարիամ Ամիրխանյանը իր անցած ճանապարհով արժանի է գնահատանքի: Մարդ, ում համար դասավանդելը տարերք է, ուսուցանելը՝ դավանանքն ու սկզբունքը, սերունդներ կրթելն ու դաստիարակելը: Արվեստագետ-մանկավարժի մոտ զարմանալիորեն վաղ է նշմարվում նկարչության հանդեպ սերն ու հակումները: Նրա հոգում արձագանքում է նկարիչ ուղենշող ազնիվ երակը: 1963 թ. ընդունվելով նկարչական դպրոց, աշակերտել է այն տարիներին քաղաքի իրենց գործի լավագույն մասնագետների՝ Ժիրայր Կետիկյանի, Բորիս Դիլոյանի, Խաչիկ Ղարաբեկյանի մոտ:

1968 թ. ընդունվել է Երևանի Փանոս Թերլեմեզյանի անվան գեղարվեստի ուսումնարան:

Ուսումն ավարտելուց հետո գալիս է այն շրջանը, երբ գիտելիքների ամբարած բեռը անհրաժեշտ է օգտագործել նպատակային, և երիտասարդ արվեստագետը 1972 թ.-ին աշխատանքի է անցնում Կիրովականի նկարչական դպրոցում (հետագայում այն վերանվանվեց Ստ. Աղաջանյանի անվան



գեղարվեստի դպրոց): Չորս տասնամյակ կրթության ասպարեզում արարող Մարիամ Ամիրխանյանի ջանքերով ու նվիրական աշխատանքով էլ է կերտվում ավանդույթաշատ գեղանկարչության դպրոցի ներկան, ինչու չէ նաև ապագան:

Չորս տասնամյակ, ու մինչև օրս դասավանդում է նույն դպրոցում, նկարչությանը վերաբերող իր գաղտնիքները նվիրելով աշակերտներին:

Մանկավարժ նկարիչը երեխաներին սովորեցնում է ոչ միայն նկարչության տեխնիկական հնարքները, այլ աշխատում է իր սաների մեջ զարգացնել ստեղծագործական ունակություններ՝ տեսնել գեղեցիկը, զգալ և ապրել իր ստեղծագործության հետ: Լինելով իր գործի գիտակը, այնպիսի սեր ու հետաքրքրություն է առաջացնում երեխաների մեջ կերպարվեստի ու նրա գաղտնիքների նկատմամբ, որ աշակերտների ձեռքի տակ ծնվում են մանկական բավականին հետաքրքիր աշխատանքներ, որոնք խոսում են Ամիրխանյան ուսուցչի նպատակային աշխատանքի մասին:

– Երբ շփվում ես երեխաների հետ, հասկանում ես, որ չափահաս դառնալով՝ կորցնում ես զարմանալի աշխարհ՝ պայծառ, մաքուր ու տաք:

Կրթօջախում հաճախ են ցուցահանդեսները, անկախ ժամանակ-հանգամանքներից, «մեղավորները» իրենք են, դպրոցի սաները, իրենց գունային հեքիաթներով:

Մեծ է Մարիամ Ամիրխանյանի դերը երեխաների գեղագիտական դաստիարակության և ստեղծագործական ունակությունների բացահայտման ու զարգացման գործում:

Այստեղ արդեն անուրանալի է նրա գործին նվիրումը, բանիմացությունն ու կուտակած ուսանելի մանկավարժական փորձը:

– Պարտադիր չէ, որ դպրոցի սանն անպայման արվեստագետ դառնա, թեև ցանկալի է: Գեղեցիկը թրծում է ապագայի հայ քաղաքացուն, քանզի դպրոցի առաքելությունն էլ ազգային ու հայաշունչ է:

Դրա համար մանուկների գեղագիտության տիրուհին ջանք չի խնայում, որ իր սաները լավ մարդ դառնան, հոգիներում գեղեցիկը, լույսն ու բարությունն անթեղած:

Ի վերուստ օժտված մանկավարժ է այդ տիրուհին, և անցնող տարիները ավելացրել են ապրելու, ճանաչվելու, սիրվելու շնորհքը:

Գեղանկարիչ Մարիամ Ամիրխանյանը այս ամենին զուգահեռ, լինելով ճանաչված արվեստագետ, ակտիվ մասնակցություն ունի քաղաքային, հանրապետական ու միութենական ցուցահանդեսներին՝ արժանանալով բազմաթիվ մրցանակների, անվանի նկարիչների ուշադրությանն ու դրվատանքին:

Ընդհանրացնելով ասելիքս Ամիրխանյան մարդու, մանկավարժի, արվեստագետի մասին՝ ասեմ, որ նա երկար ու դժվարին ինքնահաստատման ճանապարհ է անցել:

Նրա ստեղծած արվեստի գործերը տեղ են գտել ինչպես քաղաքի, հանրապետության պատկերասրահներում, այնպես էլ հանրապետության ու արտերկրի մասնավոր հավաքածուներում և դրանք մեր ազգային արվեստի մի մասն են կազմում:

***Սիլվա ԽԱՉԱՏՐՅԱՆ***

---

**ՅԷ**

ՅԴ արիության, Արցախի մայրերի երախտագիտության, Վազգեն Սարգսյան, Բանակի ստեղծման 20-ամյակի մեդալների և 5-րդ բրիգադի հուշամեդալի մեդալակիր Ռազմիկ Մարադյանը սփոփվում է կենդանի մնացած ընկերներով, որոնք էլ իր նման համոզված էին, որ ուրիշը Հայրենիք չի տալիս, հայրենիքին տեր են կանգնում նրա հողի վրա մնալով, նրա համար մարտնչելով: Մարտնչելու համար բանակ է պետք, բանակի համար՝ զենք ու զինամթերք:

Ռազմիկի այդ ընկերներից մեկն էլ Էդվարդ Խլղաթյանն է, որ Կալուգայի իր կարողությունները վեր ածեց զենք ու զինամթերքի, հանուն իր հայրենիքի, հանուն իր հողի, և մի՞գուցե ընկերոջ մատակարարած զենք ու զինամթերքով էր թշնամուն խոյահարում Ռազմիկը: Չի բացառվում:

Հաղթանակած ազատամարտիկ հայորդին, օգտագործելով իր փորձն ու գիտելիքները, այսօր էլ «մարտական» դիրքերում է: Նրա ու մեր մյուս կտրիճների կերպարները օրինակ են ծառայում այսօրվա ասպետություն փնտրող մեր երիտասարդների, հաղթանակած բանակի շարքերը վաղը համալրող մեր զինակոչիկների, հայրենի սահմանները պահպանող զինվորների համար:

Այսօր էլ լինելով երկրապահ կամավորական ընկերության Վանաձորի տարածքային բաժանմունքի նախագահը՝ շրջապատի համար վարակիչ օրինակ է ու ներշնչանքի աղբյուր, ընկերների հետ ամեն րոպե պատրաստ հանուն հայրենիքի նոր խիզախումների: Հավատարիմ Նժդեհի պատգամին ծառայում է ժողովրդին ու Հայրենիքին:

Կյանքում հազար ու մի ճանապարհներ կան: Ռազմիկ Մարադյանը որպես կյանքի ճանապարհ ու ճակատագիր ընտրեց պայքարի ճանապարհը, որքան էլ որ դժվար է եղել: Նրա երջանկությունը, սակայն, այսօրվա ազատ ու անկախ հայրենիքն է, իր հզոր ու կայացած բանակով, իսկ այդ անկախությունն ու կայացումը նրա ու նրա նմանների անձնազոհության դրսևորման արդյունքն է: Այսպիսի խոհերով բաժանվեցի հայրենիքի զինվոր մարդու հետ զրույցից հետո:

Արարիչը մարդ ասունին որոշակի ժամանակահատվածով մի կյանք է տալիս ու ասում՝ լցրու այդ դատարկությունը: Ռազմիկ Մարադյանը այդ դատարկությունը լցրել ու լցնում է հայրենասիրությամբ, հերոսությամբ, մայր ժողովրդի բարօրությանն անմնացորդ նվիրմամբ:

***Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***

# ՇԱԿԱԼՆԵՐԸ

Արծիվներն են մեռնում ծերպերի մեջ ժայռի,
Ու տնքոցը նրանց ոչ ոք չի լսելու.
Առյուծներն են մեռնում ավազներում կարմիր,
Ու փղերն են մեռնում ջունգլիներում:

Զագերն առյուծների շակալներն են տանում,
Նրանց hոծ ոհմակին ոչինչ չի դիմանա,
Ու մահ չկա նրանց՝ մեռնում են ու հառնում,
Թե որտեղ են մեռնում՝ ոչ ոք չի իմանա:

Արծիվներն են մեռնում ծերպերի մեջ ժայռի,
Շակալներն են ցնկնում ժայռերի տակ,
Շակալներն են ցնկնում ջունգլիներում վայրի,
Ավազներում կարմիր ու հյուսիսում ճերմակ:

Շակալներ են ցնկնում մեր ուղեղում անգամ,
Որտեղ չկա արդեն ոչ մի մռունչ ահեղ,
Որտեղ չկա արդեն ոչ մի սլացք, անկում
Ու փղերի հանդարտ, իմաստաբեռ քայլեր:

Շակալներ են վազում մեր ուղեղում հիմա,
Ու ոռնոց է՝ ինչ էլ փորձես արտաբերել:
Շակալներ են ցնկնում ճամփաներում ամա,
Քաղաքներում թափուր և գյուղերում ավեր:

*Ալեքսանդր ՂՈՒՄԱՇՅԱՆ*

# ՉԸՆՏՐՎԱԾԸ

1794 թվականի մայիսի 8-ին, ֆրանսիական մեծ հեղափոխության երկրորդ փուլում, ֆրանսիացի հանճարեղ քիմիկոս, ժամանակակից քիմիան գիտական հիմքերի վրա դրած բնագետներից մեկը՝ Անտուան Լորան Լավուազիեն մեկ օրում հարցաքննվեց, դատապարտվեց և պապ՝ գիլյոտինահարվեց:

Մինչ այդ հրեշավոր գործողությունը Լավուազիեի գործընկերներն ու մտերիմները ներման համար դիմել էին հեղափոխության արդարադատության ներկայացուցչին: Թվարկել էին մեծ քիմիկոսի՝ գիտությանը մատուցած վիթխարածավալ ծառայությունները: Հետևել էր չինովնիկի ցինիկ պատասխանը. «Մեզ հանճարներ պետք չեն»:

Հետագայում, անդրադառնալով Լավուազիեի դաժան ճակատագրին, նրա հայրենակից, հանճարեղ մաթեմատիկոս Ժոզեֆ Լուի Լագրանժը (1736 - 1813) ասել է. «Ընդամենը ակնթարթ էր հարկավոր այդ գլուխը կտրելու համար, իսկ որպեսզի ստեղծվի այդպիսին, հարյուրավոր տարիներն էլ բավական չեն»...

Լավուազիեի նահատակվելուց 177 տարի անց՝ 1971 թվականին, ՀԽՍՀ Գիտությունների ակադեմիայում Պարույր Սևակը, իսկ քիչ անց նաև Հովհաննես Շիրազը, չընտրվեցին հիշյալ ակադեմիայի թղթակից անդամներ...

Մի՞թե Պարույր Սևակը արժանի չէր ակադեմիայի թղթակից անդամի կոչմանը: Հարցին պատասխանում է ՀՀ ԳԱԱ ակադեմիկոս Սերգեյ Սարինյանը. «Որ Պարույր Սևակը և Հրանտ Մաթևոսյանը արժանի էին ակադեմիկոսի կոչման, քան որևէ այլ մեկը՝ հայտնի ճշմարտություն է: Որ Սուրեն Աղաբաբյանը սերնդակիցներից առաջինը պիտի լիներ ակադեմիայի անդամ, անվիճելի է: Նույնպես և Հենրիկ Հովհաննիսյանը, որ գրեթե մրցակից չունի իր բնագավառում, գիտուն է ըստ ամենայնի: Ուրեմն, կան նաև ներքին գործող անտեսանելի օրենքներ» (Ս. Սարինյան, Ի հեճուկս, Ստեփանակերտ, 2006, էջ 141)...

Մեծարգո ակադեմիկոսի՝ «Ուրեմն, կան նաև ներքին գործող անտեսանելի օրենքներ» արտահայտությունը շատ դիպուկ և տեղին է ասված: Միայն թե պետք է հստակեցնել, թե այդ «անտեսանելի օրենքները» ո՞ւմ համար են անտեսանելի: Ինձ համար այդ օրենքները միանգամայն տեսանելի են: Տասնյոթ երկար ու ձիգ տարիներ աշխատել եմ ՀՀ Կրթության և գիտության նախարարության Բարձրագույն որակավորման հանձնաժողովում: Այդ տարիներին, պաշտոնիս ընձեռած հնարավորություններով, շփվել եմ մեր հանրապետության շատ ու շատ ակադեմիկոսների, ակադեմիայի թղթակից-անդամների հետ:

Շփվել եմ ոչ միայն գործնական, գիտական այս կամ այն բնագավառին առնչվող աշխատանքային տարաբնույթ խնդիրներ քննարկելիս, Բարձրագույն որակավորման հանձնաժողովում կազմակերպված միջոցառումներում, այլև շատ ու շատերի հետ, ունենալով մտերիմ և ջերմ հարաբերություններ, քննարկել ենք մեր Ազգային ակադեմիայի շատ ու շատ կնճռոտ և որոշակի լուծումներ պահանջող հիմնահարցեր:

Այնուհանդերձ, Պարույր Սևակի թղթակից-անդամ չընտրվելու իրողությունը թե՛ այն՝ հեռավոր 1971-ին և թե՛ դրանից հետո եկած օրերին, մի բուք ցավի և մեղավորության զգացողությամբ է պատում բոլոր այն մարդկանց գիտակցությունը, ովքեր գիտեին, թե իրականում ով էր այդ չընտրված գիտնական-բանաստեղծը: Չէ՞ որ Պարույր Սևակն ամբողջովին փոխել էր մեր աշխարհայացքը, իրերի հետ մեր հաղորդակցման եղանակը: Իսկ 1971-ին կատարվեց անսպասելին...

Քիմիան հավաստում է, որ մինչ այժմ մեզ հայտնի բոլոր նյութերը մաքուր վիճակում գոյություն ունենալ չեն կարող: Այդ իսկ պատճառով, նյութերի մաքրությունը բնութագրելիս օգտվում են, այսպես կոչված՝ նյութերի մաքրության աստիճանից: Ըստ այդմ կան մաքուր, քիմիապես մաքուր և գերմաքուր կամ հատուկ մաքրության նյութեր:

Կարծում եմ, այսօր շատ շատերը գիտեն ՀՀ Գիտությունների ազգային ակադեմիայի մաքրության աստիճանի մասին: Ըստ իս այսօրվա մեր ակադեմիան այնպիսի անդեմ վիճակում է, որ անհնար է որոշել նրա մաքրության աստիճանը...

Բանասիրական գիտությունների դոկտոր Դավիթ Գասպարյանից՝ ներքոբերյալ մեջբերումը պերճախոս վկայությունն է մեր Ազգային ակադեմիայի ոչ միայն «մաքրության» աստիճանի, այլև այնտեղ տիրող գողական կարգավիճակի մասին. «Անգամ հրաժարվեցի մասնակցելու ԳԱԱ անդամների ընտրությանը՝ նախապես իմանալով այնտեղ տիրող հակագիտական քստմնելի բարքերի մասին: Չմոռանանք, որ դա այն ակադեմիան է, որ իր դռները փակեց Պ. Սևակի և Հ. Շիրազի առջև, իսկ Հ. Մաթևոսյանին թույլ չտվեցին անգամ մոտ գնալ: Առարկայական պահանջներն այս ոլորտում խրվել են ենթակայական հարաբերությունների գարշահոտ ճահիճը: Այնպես որ, չկարծեք, թե ուղիղ քայլելը հեշտ է մեր անուղիղ իրականության մեջ» («Նարցիս», 2011, դ 3, էջ 25):

Նախ՝ վերհիշենք, թե մինչև 1971 թվականը, մեր գրողներից ովքեր էին ընտրվել ակադեմիայի իսկական կամ թղթակից անդամներ:

1943-ին հիմնադրված ՀԽՍՀ Գիտությունների ակադեմիայի հիմնադիր անդամ է ընտրվել Ավետիք Իսահակյանը: Տասը տարի անց, 1953-ին՝ Դերենիկ Դեմիրճյանը և վերջապես 1965-ին՝ Ստեփան Զորյանը:

Ինչպես տեսնում ենք, 1943 թվականից մինչև 1971 թվականը ակադեմիայի իսկական անդամներ են ընտրվել երեք գրող՝ Ավետիք Իսահակյան, Դերենիկ Դեմիրճյան և Ստեփան Զորյան: Երեք մեծություններ, երեք խնկելի անուններ...

Քսանութ տարում՝ երեք գրող: Ասել է թե, շուրջ մեկ տասնամյակում՝ մեկ գրող...

Ավետիք Իսահակյանը ակադեմիկոս է ընտրվել 68 տարեկանում: Դերենիկ Դեմիրճյանը և Ստեփան Զորյանը՝ 76-ում...

Պարույր Սևակը 1971-ին 47 տարեկան էր: Միգուցե դեռ այն տարիքում չէր ակադեմիայի թղթակից-անդամ ընտրվելու համար: Չեմ կարծում: Մինչև 1971 թվականը ակադեմիայի իսկական կամ թղթակից անդամ են ընտրվել աստղաֆիզիկոս Վիկտոր Համբարձումյանը՝ 35, մաթեմատիկոս Սերգեյ Մերգելյանը՝ 25, ֆիզիկոսներ Արտեմ Ալիխանյանը՝ 35, Աբրահամ Ալիխանովը՝ 39, մեխանիկոս Նագուշ Հարությունյանը՝ 38, կենսաբան Էզրաս Հասրաթյանը՝ 44, լեզվաբան Արարատ Ղարիբյանը՝ 48, ֆիզիկոս Գրիգոր Գուրզադյանը՝ 43, մաթեմատիկոս Մխիթար Ջրբաշյանը՝ 35, կենսաբան Հրաչյա Բունիաթյանը՝ 36, ֆիզիկոս Գրիգոր Ղարիբյանը՝ 39, կենսաբան Գագիկ Դավթյանը՝ 38 տարեկանում և այլք...

Ուրեմն, Պարույր Սևակի թղթակից-անդամ ընտրվել-չընտրվելու հարցը տարիքի հետ կապ չունի:

1971 թ. Պարույր Սևակի անունը թե՛ Հայաստանում և թե՛ Սփյուռքում հայ ժողովրդի ազնիվ զավակների շուրթերին էին: Քայլող հեղինակություն և մարդ-լեգենդ էր Պարույր Սևակը:

Ի՞նչն էր հապա պատճառը: Նախանձը, հավանաբար: Կարծում եմ, քանզի նախանձն առավել նողկալի արատ է, քան թշնամանքը: Հայտնի է, որ թշնամին վերջակետ է դնում թշնամությանը, երբ մոռացության գիրկն է անցնում թշնամանքի պատճառը: Այնինչ, նախանձ մարդը անկարող է բարեկամ դառնալ: Թշնամին բաց պայ-

Շ6

քար է մղում, նախանձող մարդը՝ թաքուն, քողարկված:

Թշնամանքից ու նախանձից բացի, տմարդության մեկ այլ դրսևորում ևս կա, ինչը, Նիկոլայ Գոգոլի բնութագրմամբ. «Մարդու մեջ որքան շատ է տմարդությունը, որքան շատ վայրագ կոպտություն կա քաղցր-մեղցր, ույալ նրբակրթության մեջ և, օ՜ Աստված, նույնիսկ այն մարդու մեջ, որին բարձր հասարակությունը ազնիվ ու պատվավոր է համարում:

Գուցե կար և Պարույր Սևակի անձի հանդեպ չկամությունը: Գուցե և որոշ բարձրաստիճան չինովնիկների և ակադեմիկոսների ուղեղների պուչավոր (Պարույր Սևակի խոսքերն են - Ա. Փ.) լինելը:

Բանասիրության դոկտոր Դավիթ Գասպարյանի հստակ պատասխանը միանգամայն ցրում է մեր տարակուսանքների մութ ամպերը. «Ի՞նչ էր արել Պ. Սևակը ձեզ, արգո քննադատ-ակադեմիկոսներ: Այն էր արել, որ ձեզանից շատ բարձր էր իր տաղանդով, իմացություններով և հատկապես՝ «գրականության գալիք օրը» տեսնելու իր անվրեպ կռահման ուժով: Նա ձեզ համար վտանգավոր էր նաև իր ինքնուրույնությամբ, որ նորության ու անկրկնելիության նախադրյալն է: Այդպես է, և դուք չդիմացաք ձեր շուրջ մեծություն հանդուրժելու փորձությանը: Չէիք կարող դիմանալ, քանզի ձերը ոչ այնքան ազգային շահն էր, այլ ձեր նեղանձնական սնափառությունը» (Դ. Գասպարյան, Պարույր Սևակ, կյանքը և ստեղծագործությունը, Երևան, 2001, էջ 447)...

Ազգային շահ...

Ի՞նչ ազգային շահի մասին կարող է խոսք լինել: Եվ այն էլ մեր ակադեմիայի ընտրությունների պարագայում: Եթե ընդունենք անգամ, որ Պարույր Սևակը մեր ակադեմիայում իրեն գնահատող, բարի կամեցող գիտնական-համախոհներ ուներ, ընտրությունների օրերին այդ գաղափարը, մեծավ մասամբ, ի չիք է դառնում: Քանզի ժամանակին այդ «բարեկամների» մասին Շեքսպիրն է մեզ զգուշացրել.

> Բարեկամությունը հավատարիմ է բոլոր գործերում,
> Բացի սիրո և շահի գործից...

*(«Իզուր տեղը մեծ աղմուկ», արարված երկրորդ, տեսարան առաջին)*

Սովամահ եղած բանաստեղծ և թարգմանիչ Ալեքսանդր Ծատուրյանը դեռևս 1901-ին, մարգարեաբար գուշակելով իրենից մեկ դար հետո եկող հայ գործիչների գործելակերպը, գրել է. «Մեծության աթոռ» վերնագրով բանաստեղծությունը.

> Ես գիտեմ կյանքում աթոռ մեծության,
> Խաչեր ու աստղեր շարեշար վերան...
> Ով այդ աթոռին հասնել ուզենա,
> Երկու հատկություն պետք է ունենա-
> Մեծի առաջև խոնարհիվել, դողալ...
> Մեծի հետևից կամացուկ սողալ...

Ալեքսանդր Ծատուրյանը չի նշել, որ այդ մեծության աթոռին հասնելու համար չեմ ասում տգետ, ապա կիսագրագետ, բռի, զոռբա և գեղացի (չշփոթել բարիք ստեղծող գյուղացի չքնաղ բառի հետ - Ա. Փ.) պետք է լինել...

Որ մեր, այսօր արդեն Գիտությունների ազգային ակադեմիա հորջորջվող այդ կառույցը ստեղծման (1943 թվական, նոյեմբերի 29) առաջին իսկ օրվանից մինչև այսօր համայն հայության գիտական և մշակութային կյանքում դրական դերակատարում է ունեցել, քննարկման հարց չի կարող լինել: Դա հայտնի պատմական իրողություն է: Ինքս, բարձրագույն կրթություն ստանալուց հետո, գիտական մկրտությունս ստացել եմ այդ ակադեմիայի հաստատություններից մեկում՝ 1979-ին արժանանալով քիմիական գիտությունների թեկնածուի գիտական աստիճանի:

Այսօր էլ, իր բազում աղաղակող բացթողումներով հանդերձ, բարձրագույն կրթությամբ գիտաշխատողներին օրական մի բուխանկա հաց տալով, մեր Ազգային ակադեմիան անվերջ տեղապտույտներ անելով, փորձում է դուրս գալ ցեխափոսից...

1971 թվականին Պարույր Սևակին չընտրելով ակադեմիայի թղթակից-անդամ դեռևս «ազգային» չհորջորջված ՀԽՍՀ Գիտությունների ակադեմիան փաստեց ահավոր մի իրողություն: Ինչպես կհամոզվենք քիչ անց, Գիտությունների ակադեմիան ՀԽՍՀ կոմկուսի կենտկոմի բաժիններից մեկն էր: Այն ինքնուրույն կառույց չէր...

1971 թվականին Պարույր Սևակը թշնամիներ ուներ: Դրանց մի մասը իր հացը կիսող գործընկերներն էին, մյուսները՝ պետական բարձրաստիճան կենտկոմական չինովնիկներ: Թշնամիների մի մասն էլ «Իքի-բիր» հացկատակներ էին, ովքեր հետագայում, Սևակի վախճանից հետո, հրաշալի հուշեր գրեցին նրա մասին:

Խոսենք փաստերով: 1971 թվականին Պարույր Սևակը Հայաստանում և Հայաստանից դուրս ճանաչված բնաստեղծ էր, գրականագետ, թարգմանիչ և խմբագիր: 1955 թվականին՝ Մոսկվայում լույս էր տեսել Վազգեն Մնացականյանի «**История армянской советской литературы**» մենագրությունը, որի 293-297 էջերը նվիրված են Պարույր Սևակին: Ավելի վաղ, Երևանում, 1952 թվականին Ավետիք Իսահակյանի խմբագրությամբ լույս է տեսել «**Поэты Армении за мир**» ժողովածուն, որի երեք էջերը նվիրված են Պարույր Սևակի ստեղծագործություններին: 1948, 1953, 1954, 1957, 1959, 1960, 1961 և 1963 թվականներին Երևանում, Թեհրանում և Բեյրութում լույս էին տեսել Պարույր Սևակի բանաստեղծությունների և պոեմների ժողովածուներ:

«Անլռելի զանգակատան» հեղինակի լուսանկարը շատ շատերի բնակարաններում էր, անգամ հնակարկատ կոշկակարների արհեստանոցների պատերին՝ Խրիմյան Հայրիկի, Զորավար Անդրանիկի և Վազգեն Առաջին Վեհափառի նկարների հարևանությամբ...

1969 թվականին Երևանում «Լույս» հրատարակչությունը լույս է ընծայում Սուրեն Աղաբաբյանի «Խորհրդահայ գրականություն» դասագիրքը 10-րդ դասարանի համար: Դասագրքի առանձին բաժինները նվիրված են Հակոբ Հակոբյանին, Նաիրի Զարյանին, Գեղամ Սարյանին, Հովհաննես Շիրազին: Պարույր Սևակին առանձին գլուխ հատկացված չէ: Նրա ստեղծագործությանը նվիրված է ընդամենը... մեկ էջ:

Հակոբ Հակոբյանին բանասիրության դոկտոր Ս. Աղաբաբյանը նվիրել է 17 էջ, Գեղամ Սարյանին՝ 7, Նաիրի Զարյանին՝ 25: Հովհաննես Շիրազին նվիրված է 13 էջ... Պարույր Սևակին՝ մեկ էջ...

Ովքե՞ր էին իրականում հայկական անուն-ազգանունով Պարույր Սևակի թշնամի այդ պնակալեզները:

Հարցին անվրեպ, դիպուկ ու առնական կեցվածքով պատասխանում է հայ պոեզիայի Քուռկիկ Ջալալի (Շավիղ Գրիգորյանի՝ Պարույր Սևակին նվիրված գրքի վերնագիրն է- Ա. Փ.) Պարույր Ռաֆայելի Սևակը.

> Այս աշխարհ դարը ինքը ինձ ծնեց
> Եվ... քանի անգամ կործանել ջանաց,
> Բայց-կեցցեմ ես
> Ու թող նա կեցցե –
> Չկարողացավ կործանել:
> Ջանաց
> Իր այն աչքաբաց բիճերի ձեռքով,
> Որ նրա աչքի յուղն էին կերել
> Եվ ուզում էին ինձ՝ հարազատիս,
> Խորթ ցույց տալ նրան...

*(Պ. Սևակ, «Իմ կտակը», Երկերի ժողովածու վեց հատորով, հատոր վեցերորդ, Երևան, 1976, էջ 84)*

Բանաստեղծությունը գրված է 1959 թ. դեկտեմբերի 19-ին՝ Մոսկվայում: Ասել է թե, հանճարեղ բանաստեղծը դեռ «էն գլխեն» գիտեր, որ Երևանում այդ աչքաբաց բճի լակոտները ուտելու են իրեն...

Ըստ մեծանուն հայագետ Հրաչյա Աճառյանի «բիճ» բառը թուրքական ծագում ունի (Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հատոր առաջին, Երևան, 1971, էջ 451) և նշանակում է «պոռնկորդի, ապօրինի զավակ»:

Ալեքսանդր Պուշկինի «Տերտերի և նրա Բալդի ծառայի հեքիաթը» ստեղծագործությունում կա հետևյալ զավեշտալի տեսարանը: Երկար ժամանակ հարկ չտալու համար խիզախ Բալդին պատժում է ծովի խորքերում բնակվող սատանաներին:

Ծովի խորքերից լսվում են սատանաների գոռումգոչյունները.

> Հերիք խառնես մեր ծովը դուն,
> Էս ի՞նչ կարգ է,
> Էս ի՞նչ վարք է,
> Քու ուզածը
> Էս ի՞նչ հարկ է.
> Էս ի՞նչ լուր է.
> Ի՞նչ տխուր է:
> Իմացած կա՞ զոնե մեկը –
> Հարկ վճարեն սատանեքը:

6➲

Պուշկինի այս տողերը գրված են Պարույր Սևակի ակադեմիայի թղթակից անդամ չընտրվելուց շուրջ մեկ ու կես դար առաջ: Եվ կարծես հենց հայ բանաստեղծի համար են գրված:

Նորից կարդանք Պուշկինի տողը. «Հերիք խառնես մեր ծովը դուն»: Սա սատանաներն են ասում Բալդուն, երբ նա թոկը ոլորել, մտցրել էր ծովի մեջ և ծովը խիստ փոթորկվել էր: Եվ ծովի խորքերից լսվեցին սատանեքի ձայները՝ հերիք խառնես մեր ծովը դուն...

Եթե Պարույր Սևակը ընտրվեր ակադեմիայի թղթակից-անդամ, մի յուրօրինակ Բալդի պիտի դառնար շատ ու շատ ակադեմիկոսների համար, քանի որ թարմ շունչ ու կենդանություն կհաղորդեր ակադեմիայի արդեն 80 տարեկանն անց շատ ու շատ նավթալինած ակադեմիկոսների ներկայությանը սպառնալու իր վտանգավոր կեցվածքով:

Ըստ բանասիրության թեկնածու Վաչե Սաֆարյանի. «1971 թվականին Պարույր Սևակին չընտրեցին ակադեմիայի թղթակից-անդամ: Այդ կարևոր քաղաքական գործում սև ծառայություն ունեցան ակադեմիայի թղթակից-անդամ Լևոն Խաչիկյանը և ակադեմիկոս Մկրտիչ Ներսիսյանը: Կար նաև կենտկոմի քարտուղար (գաղափարական) Ռ. Խաչատրյանի բանավոր հրահանգը» («Լրագիր» թերթ, 1995, 29-ը նոյեմբերի):

Ունե՞նք իրավունք որպես հալած յուղ ընդունելու Վ. Սաֆարյանի վկայությունը: Կարծում եմ այո, քանի որ Վ. Սաֆարյանը Պարույրի մտերիմներից էր: Գիտեր նրա կյանքի շատ ու շատ՝ ցարդ մեզ անծանոթ մանրամասները: Եվ որ ամենակարևորն է: Նրա թափանցիկ ակնարկը, թե. «Կար նաև կենտկոմի քարտուղար (գաղափարական) Ռ. Խաչատրյանի բանավոր հրահանգը» վկայությունը ցրում է ամեն մի հարցական:

Ռ. Խաչատրյանը հայտնի Ռոբերտ Հրաչիկի Խաչատրյանն է, հայկական ազգանունով մի անձնավորություն, ում անթաքույց ատելությունը Պարույր Սևակի հանդեպ հավաստում են մեկ տասնյակից ավելի ճանաչված մտավորականներ: Համոզվելու համար, ընթերցողը կարող է իրազեկվել՝ ծանոթանալով մենագրության վերջում բերված գրականության ցանկին:

Ռոբերտ Խաչատրյանի անմիջական հրահանգով կալանվեց Սևակի «Եղիցի լույս» պոեմը: Սևակը չընտրվեց ակադեմիայի թղթակից-անդամ: Եվ վերջապես, ամենից ահավորն ու նողկալին. նրա հրահանգով Սևակի կյանքի վերջին օրերին հրկիզվեց «Եղիցի լույսի» տպաքանակի մի զգալի մասը: 2007-ին Երևանում լույս է տեսել Աշոտ Թադևոսյանի «Իմ Պարույրը...» մենագրությունը, որի 268-րդ էջում կարդում ենք. «Ահա թե ինչ վիճակի հասցրին նրան (ակնարկում է Պարույր Սևակին - Ա. Փ.) Սարինյանը, Վահագն Մկրտչյանները, Խիկար Բարսեղյանը և, հատկապես՝ Ռոբերտ Խաչատրյանը:

Այո՛, կենտկոմի քարտուղար Ռոբերտ Խաչատրյանը արել է հնարավոր ամենը Պարույր Սևակի կյանքի վերջին ամիսները դժոխքի վերածելու համար: Այդ մասին կա մեր այս մենագրության խմբագիր Ռ. Սահակյանի վկայությունը (Ռ. Սահակյան, Պարույր Սևակ (պատառիկներ իմ հուշերից), Նոր-Դար, 1998, դ 2, էջ 333):

Ռոբերտ Խաչատրյանի վախճանը խիստ տրամաբանական եղավ: Նա հանկարծամահ եղավ Հայոց աշխարհից շատ ու շատ հեռու, Մոսկվայի մետրոյի կայարաններից մեկում, 2006 թվականին: Նման հոգեկերտվածքով անհատը երկրի երեսին մեռնելու իրավունքից անգամ զրկված էր...

Իսկ ո՞վ էր Պարույր Սևակին «կուսակցական սկզբունքով» հալածող Ռոբերտ Խաչատրյանի շեֆը: Մինչև 1974 թվականը՝ Անտոն Երվանդի Քոչինյանը...

Վստահորեն կարելի է հավաստել, որ թե՛ խորհրդային կարգերի և թե՛ այսօրվա Հայաստանում մեր ակադեմիայի ընտրությունները կարգավորող սանձը եղել է և է ղեկավար մարմինների ձեռքին: Այսօր՝ ավելի շատ, քան կոմունիստների օրոք: Չեմ ուզում մանրամասնել անթիվ-անհամար իրադարձություններ: Կան, անշուշտ, հատ ու կենտ բացառություններ: 2010 թվականի դեկտեմբերի 28-30-ը ակադեմիայում կայացած ընտրություններում թղթակից-անդամ ընտրվեց գիտուն, համեստ և վերևներում ծանոթներ չունեցող ազնվագույն մի գիտնական: Ապշահար եղա, երբ թերթում կարդացի այդ մասին: Կարճ ժամանակ անց, երբ հանդիպեցինք, հարցրի.

- Այդ ինչպե՞ս եղավ:

- Ես էլ գլխի չընկա, - պատասխանեց: Այդ տեղը մեկ ուրիշի համար էր նախապատրաստված: Երևի շփոթմունք է եղել...

Պարույր Սևակին դեմ է քվեարկել նաև թունդ բոլշևիկ, ստալինյան գերանդիի հարվածի տակ ընկած, պատմական գիտությունների դոկտոր, ՀԽՍՀ առաջին լուսժողկոմ, 1921-27 թվականներին ՀԿԿ կենտկոմի առաջին քարտուղար, ՀԽՍՀ Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ, Շուշիում հոգևորականի ընտանիքում ծնված Աշոտ Գարեգինի Հովհաննիսյանը (1887-1972):

Սերգեյ Սարինյանի վկայությամբ. «Աշոտ Հովհաննիսյանը ինքնավստահ «օբյեկտիվությամբ» ասաց, թե քվեարկել է իմ դեմ: «Ինչպես թե, - զարմացա ես, - մինչդեռ ենթադրում էի, որ եթե մեկ ձայն ստանամ, ապա դա պետք է լինի Ձերը»: «Որ դու հոդված ես գրել իմ մասին, բնավ չի նշանակում, թե ես պետք է քվեարկեի քո օգտին», - եղավ պատասխանը: Արդեն անկարող էի զսպել ինձ. «Ես իմ արժանապատվությունից ցածր եմ համարում նստել Ձեր կողքին և առհասարակ որևէ առնչություն ունենալ Ձեզ հետ», - ասացի և դուրս եկա, ինչպես ասում են՝ դռան ուժգին շրխկոցով: Հաջորդ օրը Գրողների միությունում Պարույր Սևակն ասաց. «Այ ղարաբաղցի, միայն դու կարող էիր նման բան անել»: Հետո պարզվեց, որ ակադեմիկոսը երկրորդ տուրում դեմ է քվեարկել նաև Պարույր Սևակին: Համենայն դեպս կրկնաքվեարկությունների ընթացքում նա կատարել է կուսակցական հին գործչի «սկզբունքային» ընտրությունը» (Ս. Սարինյան, Ի հեճուկս, Ստեփանակերտ, 2006, էջ 122-123)... Ս. Սարինյանին էլ չհավատա՞նք:

Խորհրդային ճանաչված գրականագետ, 1970 թվականից ԽՍՀՄ Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Դ. Ս. Լիխաչովը գիտական մաֆիան բնութագրել է այսպես. «Բոլոր մաֆիաներից ամենավտանգավորն ու նողկալին գիտական մաֆիան է»... Ասողն էլ ակադեմիկոս է...

1971-ին Պարույր Սևակին շատերն են հորդորել, որ չդիմի ակադեմիայի թղթակից-անդամ ընտրվելու համար: Ավելին, ասել են նաև, որ այդ տեղը քո տնօրեն Վաչե Նալբանդյանինն է: Հիշեցնենք, որ 1971-ին Պարույր Սևակը աշխատում էր ՀԽՍՀ Գիտությունների ակադեմիայի Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտում, որի տնօրենը բանասիրության դոկտոր Վաչե Նալբանդյանն էր:

Այդպես էլ եղավ: Ակադեմիայի թղթակից-անդամ ընտրվեց Վաչե Նալբանդյանը: Այստեղ են ասել. «Տիրովին տերն է տարել, անտերին՝ գելը»...

Միշտ իր խոսքի սրամտությամբ աչքի ընկնող բանասիրության դոկտոր Գևորգ Հայրյանը (1913-1999), ով նույնպես Պարույր Սևակի հետ մասնակցում էր Ակադեմիայի թղթակից-անդամ ընտրվելու գործընթացին, Պարույր Սևակին, Էդուարդ Ջրբաշյանին կատակով ասել է. «Տղեք, շատ մի հուզվեք ու դարդ արեք: Դե, մենք էլ Ակադեմիայի դիմորդներ ենք»:

Գելը գայլը չէ: Գայլին կարելի է մի ոչխար կամ գառ տալ և ասել. «Հարգելի գայլ եղբայր, կեր այս ոչխարը և գոհացիր: Թող որ ընտրությունները ակադեմիայում անաչառ անցնեն»: Կարծում եմ, գայլը համը չի հանի: Գայլը, և ոչ Գելը: Գելը հաստատ Գայլը չէ...

Գելը՝ «Չընտրվածը» գլխի համար որպես բնաբան բերված Ալեքսանդր Ղումաշյանի «Շակալները» բանաստեղծության Շակալն է: Այսօր էլ, թե՛ մեր Գիտությունների ազգային ակադեմիայում, թե՛ մեր հանրապետության պետական և ոչ պետական կարգավիճակով բուհերում, նախարարություններում, դատարաններում և այլևայլ գերատեսչություններում շատ են շակալները: Եթե անտեր ես ու ծանոթ չունես, հարձակվում են վրադ: Եվ անպատիժ են մնում, քանի որ.

Նրանց հոծ ոհմակին ոչինչ չի դիմանա,
Ու մահ չկա նրանց՝ մեռնում են ու հառնում,
Թե որտեղ են մեռնում՝ ոչ ոք չի իմանա...

Երբ Պարույր Սևակը չընտրվեց ակադեմիայի թղթակից-անդամ, մեր հայազգի ակադեմիկոսներից, թղթակից-անդամներից ոչ մեկը բողոքի և անհամաձայնության ձայն չբարձրացրեց:

Ռուսաստանում 20-րդ դարի սկզբին Մաքսիմ Գորկու ակադեմիկոս ընտրվելու որոշ մանրամասներ այսօրվա մեր շատ ու շատ ակադեմիկոսների համար ուսանելի դաս կարող են լինել: ՀԽՍՀ Գիտությունների ակադեմիկոս Արտաշես Կարինյանը իր «Անտոն Չեխով» փոքրածավալ մենագրության էջերում մեզ է ներկայացնում խիստ ուշագրավ, անչափ ուսանելի մի մանրամասն Անտոն Չեխովի փոթորկահույզ կյանքից. «Երբ հայտնի է դառնում, որ ցարական կառավարության հատուկ հրահանգով գիտությունների ակադեմիայի ղեկավարները որոշել են ակադեմիկոսների ցուցակից հանել Մաքսիմ Գորկուն, Չեխովը ուղևորվում է Լև Տոլստոյի մոտ և հայտնում նրան այդ լուրը: Արդեն գաղտնիք չէր, որ ինքը՝ ցար Նիկոլայն էր Գիտությունների ակադեմիայի ղեկավարներին առաջարկել «Կասկածավոր» Գորկու ազգանունը ջնջել: Տոլստոյը, ինչպես Չեխովն է պատմում, - ոչ մի խոսք չի ասում, այլ միայն մռայլ տոնով նետում է հետևյալ խոսքերը. «...Ես ակադեմիկոս չեմ...»:

➲8

Ինքը՝ Չեխովը համակված անսահման զայրույթով, հատուկ նամակ է գրում Վլադիմիր Կորոլենկոյին, որին մեծագույն հարգանքով էր վերաբերվում: Երկու ականավոր գրողներն էլ պայմանավորվում են որոշ գործելակերպ մշակել և միանման բովանդակությամբ բողոքագրեր ուղարկել Ակադեմիայի ղեկավարներին:

Երկուսն էլ իրենց նամակների մեջ վճռական ու կտրուկ կերպով նշում են, որ այսուհետև իրենք այլևս չեն կարող մնալ ակադեմիկոսների շարքերում: Դա, իհարկե, հասարակ բողոք չէր, այլ հակացարական կտրուկ մի ելույթ: Դաժան ցարիզմի տիրակալության մռայլ օրերին, երբ ամեն մի այդպիսի գրություն կարող էր դիտվել ուրույն «ասպեկտով»՝ որպես ցարի և ցարիզմի դեմ ուղղված բողոք: Չեխովի ելույթը դառնում էր կառավարության դեմ ծառացող, առաջավոր գրողներին համախմբող և կազմակերպող շատ ուժեղ մի ազդակ» (Ա. Կարինյան, Անտոն Չեխով, Երևան, 1954, էջ 43-44)...

Մաքսիմ Գորկուն թև ու թիկունք կանգնելու համար Անտոն Չեխովը և Վլադիմիր Կորոլենկոն դեն շպրտեցին իրենց ակադեմիկոսության դիպլոմները...

1971 թվականին, դրանից առաջ և դրանից հետո Հայաստանի Հանրապետության Գիտությունների ակադեմիայում տիրում է շատ հետաքրքիր «հավասարակշռության» մթնոլորտ: Իշխողն ու ուղղություն տվողը հանճարեղ ասացվածքն է. «Ինչպես ուռին ու բարդին, ամեն մարդ իրա դարդին»...

Ռուսներն ավելի դիպուկ խոսք ունեն նման պարագայում. «Իմ խրճիթը գյուղի ծայրին է»...

Կարծում եմ, դասական գրողներին ըստ արժանվույն գնահատելու գործում մենք մեր հարևան վրացիներից շատ բան ունենք սովորելու: Վրաց բանաստեղծ Գալակտիոն Տաբիձեն (1892-1959) 1944 թվականին արժանացել է ՎՍՍՀ Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսի կոչմանը: Ի տարբերություն Պարույր Սևակի, Տաբիձեն միայն բանաստեղծություններ և պոեմներ է գրել:

Սակայն ավելի շատ սովորելու բան ունենք գիտությունը և մշակույթը միշտ ու միշտ ըստ արժանվույն գնահատող ֆրանսիացիներից:

Ֆրանսիացի մաթեմատիկոս Ալեքսի Կլոդ Կլերոն (1713-1765) 1731 թվականին, երբ ընդամենը 18 տարեկան էր, Ֆրանսիայի գիտությունների ակադեմիային է ներկայացնում երկրագնդի ձևի և մաթեմատիկային նվիրված սենսացիոն մի զեկուցում: Պատկառելի տարիքի ակադեմիկոսները զեկուցումը լսելուց հետո 18-ամյա Ալեքսի Կլերոնին միաձայն ընտրում են ակադեմիկոս...

Բայց դա Ֆրանսիայում էր: Եվ այն էլ 18-րդ դարի 30-ական թվականներին...

Պարույր Սևակի կյանքի շատ ու շատ մանրամասներ պարզելիս, պատահաբար տեղեկացա, որ խելացիին և տաղանդավորին հալածելը Հայաստանում վաղ անցյալում էլ է եղել: Միշտ հպարտացել եմ V-VI դդ. փիլիսոփա, տրամաբան Դավիթ Անհաղթով: Հատկապես, որ Անհաղթ անունն է ունեցել: Եվ այն էլ մեզանից շուրջ մեկ ու կես հազարամյակ առաջ: Բայց երբ կարդացի մեծանուն հայագետ, ՀԽՍՀ Գիտությունների ակադեմիայի հիմնադիր անդամ Հրաչյա Աճառյանի մի վկայությունը, փշաքաղվեցի. «Դավիթ Անհաղթ, փիլիսոփա, Հարք գավառի Հերթ կամ Հերյան գյուղից: Կոչվում է նաև Ներդյունացի, աշակերտ Սահակի և Մեսրոպի, քեռորդի Մովսես քերթողահոր: Իր ուսումն ավարտեց Հունաց մոտ և կայսեր ներկայությամբ վիճելով հույն փիլիսոփաների հետ՝ հաղթեց, որով և ստացավ Անհաղթ տիտղոսը: Վերադառնալով Հայաստան, սկսեց պարապել փիլիսոփայական երկերով, որոնք ընդունելություն չգտան: Հայերը անարգեցին Դավիթին, զարկին, վիրավորեցին: Նա գնաց Վրաստան, ուր և մեռավ» (Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատոր Բ, Երևան, 1944, էջ 24)...

Այո, հայերը անարգեցին հանճարեղ փիլիսոփային: Ավելին, զարկին, վիրավորեցին...

Բայց ինչո՞ւ: Պարզ չէ՞, ինչու: Խելացի և անտեր մարդուն միշտ պետք է զարկել: Այդպես հայերը հետագայում զարկեցին և անարգեցին Անանիա Շիրակացուն, Գրիգոր Նարեկացուն, Գրիգոր Տղային, Մխիթար Սեբաստացուն, Խաչատուր Աբովյանին, Միքայել Նալբանդյանին, Կոմիտասին, Լեոյին, Հրաչյա Աճառյանին, Հակոբ Անասյանին, Կարապետ Չոբանյանին, Մինաս Ավետիսյանին... Անարգեցին նաև Հրաչյա Աճառյանի աշակերտ Պարույր Սևակին...

Աստված երկնքի անհունից տեսավ այս բոլորը: Տեսավ և զայրացավ: Այդ զայրույթը գրի առավ ՀԽՍՀ ակադեմիկոս, բանաստեղծ Ավետիք Իսահակյանը.

Հայերի վրա զայրացավ Աստված,
Որ նրանք ունեն թեև ճոխ հանճար,
Բայց չեն միաբան, և ոխով լցված,
Դավով, նախանձով ատում են իրար:

Եվ Աստված պատժեց հայ ժողովրդին,
Եվ Հայաստանից հավաքեց տարավ
Գետեր, վտակներ, աղբյուրներ հորդուն,
Եվ թողեց հողերն անջուր ու ծարավ:

Եվ Աստված տվեց դրանց փոխարեն
Բոցակեզ ժայռեր, առապար ու քար,
Եվ դարեր անդուլ զարկող խստադեմ
Մի նենգ հարևան, ամբարիշտ ու չար:

*(Ավետիք Իսահակյան, Երկեր, Երևան, 1987, էջ 327-328)*

Բանաստեղծությունը գրված է Երևանում, 1946 թվականին:

Ընթերցողը կարող է հարց տալ գրքի հեղինակին. «Մի Պարույր Սևակի պատճառով ինչպե՞ս կարելի է վարկաբեկել մի հսկայական հեղինակավոր Հաստատություն»...

Պատասխանում եմ շուրջ երկու հազար տարի առաջ գրվածով. «Ձեզ ինչպե՞ս է թվում, եթե մի մարդ հարյուր ոչխար ունենա, և նրանցից մեկը մոլորվի, իննսունինը ոչխարը լեռան վրա չի՞ թողնի ու գնա որոնելու մոլորվածին: Եվ եթե պատահի, որ այն գտնի, ճշմարիտ եմ ասում ձեզ, թե նրա վրա ավելի կուրախանա, քան իննսունիննի վրա, որ մոլորված չեն: Այսպես՝ երկնքում գտնվող իմ հոր կամքը չէ, որ այս փոքրիկներից մեկը կորչի» (Ավետարան ըստ Մատթեոսի, Գլուխ ԺԸ, 12, 13, 14)...

1971 թվականի հունիսի 17-ին, ակադեմիայի թղթակից-անդամ չընտրվելուց ամիսներ անց, Պարույր Սևակը ավտովթարի զոհ դարձավ: Կազմակերպվա՞ծ էր այդ ավտովթարը, թե՞ ոչ, այսօր ինձ համար այն ոչ մի հետաքրքրություն չի ներկայացնում: Դավիթ Գասպարյանի դիպուկ բնութագրմամբ. «Սևակի մահը եթե անգամ պատահականություն էր, ապա պատահական չէր: Հոգեբանորեն նա արդեն իսկ դատապարտված էր մահվան, և եթե ոչ այդ փորձանքը, ապա անպայման մեկ այլ փորձանք կպատահեր նրան: Պաշտոնական ժամանակը նրան դուրս էր մղել կյանքից: Այդպես եղավ Չարենցի հետ, եթե բանտում չմեռներ, նույն այդ օրերին կամ ամիսներին այլ կերպ էր հեռանալու կյանքից: Նույնը՝ Բակունցը, Թո-թովենցը և ուրիշներ» (Դ. Գասպարյան, Պարույր Սևակ. Կյանքը և ստեղծագործությունը, Երևան, 2001, էջ 454):

Զիվանին «Ձախորդ օրեր»-ում ունի այսպիսի մի տող. «Երկիրը ուսյալ զավակին է փայփայում մոր պես...»:

Դեռ դպրոցական տարիներից հարյուրավոր անգամ կարդացել եմ «Ձախորդ օրերը»: Հարյուրավոր անգամներ էլ լսել այդ հանճարեղ գործի կատարումը:

Սակայն, ինչ-ինչ պատճառներով, «մուշտարու» աչքով խորամուխ չէի եղել այդ տողի տարողունակ իմաստին:

Կարդանք հիմա Զիվանու տողը առանց վերջին երկու բառերի: «Երկիրը ուսյալ զավակին է փայփայում...»:

Կատարյալ մի հիմարություն և տափակություն...

Այո, երկիրը պարտավոր է իր ուսյալ զավակին փայփայել մոր պես: Բայց այդ ո՞ր երկիրն է փայփայել իր ուսյալ զավակներին: Արդյո՞ք Ռուսաստանը մոր նման փայփայեց իր ուսյալ զավակներ Պուշկինին, Լերմոնտովին, Եսենինին, Մայակովսկուն, Պաստեռնակին, Բուլգակովին...

Արդյո՞ք Անգլիան մոր նման փայփայեց Բայրոնին...

Արդյո՞ք Վրաստանը մոր նման փայփայեց Դավիթ Գուրամիշվիլուն, Նիկոլոզ Բարաթաշվիլուն, Տիցիան Տաբիձեին...

Արդյո՞ք Ուկրաինան մոր նման փայփայեց Մեծ Կոբզարին՝ Տարաս Շևչենկոյին...

Պարույր Սևակին մենք չփայփայեցինք անգամ խորթ մոր պես...

Ճշմարիտ և հզոր բանաստեղծները մարգարեներ են նաև: Եվ եթե իսկական մարգարեներ չեն, հապա ինչպե՞ս մեկնաբանենք 1957-ին Մոսկվայում Պարույր Սևակի գրած հետևյալ տողերը...

Եվ գալիքի աչքում ի՞նչ եմ.
Ճո՞րտ եմ արդյոք,
Թե՞ ազատ եմ,
Հարազա՞տ եմ
Թե՞ լոկ բիճ եմ...

8 →

Այսքանից հետո արժե՞ արդյոք զարմանալ 1971 թվականին մեր ակադեմիայում կատարված քստմնելի խայտառակության համար:

Արժե, քանի որ ևս մեկ վկայություն ունենք: Պարույր Սևակի ակադեմիայի թղթակից-անդամ չընտրվելուց 16 տարի առաջ, իր կենդանության օրոք, չգնահատված և ստալինյան մահվան ճամբարներում իր չգործած մեղքերի համար դատապարտված Լեռ Կամսարը գրել է. «Ես զարմանում եմ, թե մեր Գիտությունների ակադեմիայում ինչո՞ւ կբվորներ չկան նստած» (Լեռ Կամսար, Կարմիր օրեր, Երևան, 2000, էջ 328)...

2006 թվականին, Պարույր Սևակի՝ ակադեմիայի թղթակից-անդամ չընտրվելուց 35 տարի անց, մեր, այս անգամ արդեն ՀՀ Գիտությունների ազգային ակադեմիայում դարձյալ հերթական ընտրություններ եղան: Արդարության հանդեպ չմեղանչելու համար ասեմ, որ ակադեմիայի թղթակից-անդամներ ընտրվածների մեջ կային իրականում արժանի մի շարք գիտնականներ: Սակայն...

Ահա այդ սակայնի մասին է խոսքս: Այդ, 2006-ին մեր ակադեմիայում մինչ այժմ չլսված ու չտեսնված մի խայտառակ գործարք իրականացվեց: Չորս-հինգ գիտությունների դոկտորներ կային՝ պատմաբան, կենսաբան, մաթեմատիկոս... Նրանք պետք է դառնային թղթակից-անդամներ: Կարևոր չէ՝ ինչպես: Շատ երկար մտածեցին մեր ակադեմիայի օստապ բենդերները, շուրաները և բալագանովները: Եվ... գտան ելքը: Այդ չորս-հինգը ջահել, կարմրաթուշ, դեռևս 50-ը չբոլորած «խարոշ» տղեք էին: Դրանց տեղերի համար տրված հայտարարությունում նշված էր. «Կարող են դիմել մինչև 51 տարեկանները»... Պրծավ-գնաց: Ըոտեղ որ քոնը կասես, էնտեղ էլ իմը ասա: Եվ այդ կարմրաթուշ տղերքը դարձան թղթակից-անդամներ: Իրոք որ աշխարհում մեկ հրեաներն են խելացի, մեկ էլ՝ հայերը...

2006 թվականի հիշյալ ընտրություններից կարճ ժամանակ անց, «Ազգ» թերթի 2006 թվականի դեկտեմբերի 27-ի համարում տպագրվեց բանասիրության դոկտոր Ազատ Եղիազարյանի ճշմարտախոս և ուսանելի հոդվածը, որում, ի մասնավորի, ասված է հետևյալը. «Հայաստանի գիտությունների ակադեմիայի բարձրագույն մարմինը ակադեմիկոսների և թղթակից-անդամների ընդհանուր ժողովն է, որը որոշում է կայացնում ակադեմիայի գործունեության գլխավոր խնդիրների մասին, մինչդեռ գիտություն ստեղծում են հետազոտական ինստիտուտները: Ակադեմիան պետք է ղեկավարի այն մարմինը, որն ուղղակիորեն կապված է գիտահետազոտական աշխատանքների հետ: Պետք է փոխել կառավարման ձևը: Ակադեմիայի բարձրագույն մարմինը թողնել այսօվա ակադեմիկոսների և թղթակից-անդամների ժողովը, այլև հնացած է: Ես կարծում եմ՝ ընդհանուր ժողովը պիտի ձևավորվի ինստիտուտների տնօրեններից և կոլեկտիվների ներկայացուցիչներից: Ակադեմիկոսների և թղթակից-անդամների ժողովը գիտական փործաքննություն պիտի անցկացնի, գիտության զարգացման ընդհանուր խնդիրների մասին խորհուրդներ, երաշխավորություններ տա: Ժամանակին՝ Մանուկ Աբեղյանի, Վիկտոր Համբարձումյանի, Հրաչյա Աճառյանի, Հակոբ Մանանդյանի պարագայում ընդհանուր ժողովի դերը հասկանալի էր և ընկալվում էր իբրև մտավորական ընտրանու կարծիք, որը ակնածանքով էր ընդունվում: Հիմա այդպես չէ: Եվս մեկ այսպիսի ընտրություն և նման արձագանք հասարակության, փշուր չի մնա ակադեմիայի հեղինակությունից»...

2010 թվականին մեր ազգային ակադեմիայում հերթական ընտրություններ եղան: Էլի մի քանի արժանիները հասան իրենց նպատակին և ստացան ակադեմիայի թղթակից-անդամի պատվավոր տիտղոսը: Սակայն էլի ամեն ինչ անցավ «Խոսալու վրա է» հանճարեղ նշանաբանով: Իսկ ազգային ակադեմիայից ոչ մի փշուր էլ չպակասեց:

Էլի ընտրություններ կլինեն: Ու էլի ընտրությունների օրերին կհայտնվի բոլոր ժամանակների հանճարեղ գործ դզող, միշտ անմահ գողական ու հարգարժան ակադեմիկոս Քավոր Պետրոսը...

## Հ. Գ.

1943 թվականին ԽՍՀՄ կառավարության և ՀԽՍՀ Կոմունիստական կուսակցության Կենտկոմի որոշմամբ ՀԽՍՀ-ում հիմնվում է Գիտությունների ակադեմիա՝ ԽՍՀՄ Գիտությունների ակադեմիայի հայկական մասնաճյուղի (Արմֆան) հիման վրա, որի նախագահն էր Հովսեփ Օրբելին:

Ակադեմիայի հիմնադիր կազմի առաջին քվեարկության ժամանակ աշխարհահռչակ լեզվաբան, հայոց լեզուն աշխարհի 562 լեզուների հետ համեմատած Պարույր Սևակի ուսուցիչ Հրաչյա Աճառյանի թեկնածությունը, Հովսեփ Օրբելու անմիջական հրահանգով, ակադեմիկոսների ցուցակում չեն մտցնում, պատճառաբանելով, թե արևմտահայ է, ոչ կուսակցական և քաղաքականորեն անվստահելի:

Այս կապակցությամբ Հրաչյա Աճառյանը մի ընդարձակ նամակ-դիմում է գրում ՀԽՍՀ Կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի քարտուղար, հետագայում ՀԽՍՀ Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս Սահակ Կարապետյանին: Նամակում մանրամասնորեն ներկայացնում է իր անձը, արժանիքները և գիտական աշխատությունները:

Հիշյալ նամակը, ինչպես նաև վրացիականավոր գիտնական և հայագետ Ակակի Շանիձեի անմիջական միջամտությունը, ունեցել են իրենց դրական դերակատարումը և Հրաչյա Աճառյանը երկրորդ քվեարկության ժամանակ հաստատվել է նորաստեղծ ակադեմիայի հիմնական կազմում (տե՛ս. Խ. Բադիկյան, Հրաչյա Աճառյան. Մարդը և քաղաքացին, Երևան, 2005, էջ 232-235): Հրաչյա Աճառյանի նամակը Ակակի Շանիձեին (Հ. Աճառյան, Նամակներ, Երևան, 2003, էջ 176-177):

**Հատված «ՍԵՎԱԿԻ ՀԵՏ» մենագրությունից**

***Ասատուր ՓԱՇԱՅԱՆ***

1 →

# Քվեարկե՛նք Հայաստանի օգտին

2012 թվականին համաեվրոպական երգի «Մանկական Եվրատեսիլ» մրցույթին Հայաստանը ներկայացնելու է «Կոմպաս Բենդ» խումբը:

Խմբի անդամները՝ Արամը, Դավիթը, Աբրահամն ու Արշավիրը դասընկերներ են, բոլորն էլ 13 տարեկան: Դեռևս մեկ տարի էլ չկա, ինչ նրանք համախմբվել են և որոշել երգել միասին: Հունիսի սկզբին, երբ առաջին անգամ միասին կենդանի կատարմամբ հանդես եկան, որոշեցին ներկայանալ նաև Մանկական Եվրատեսիլին: Այդ ժամանակ դեռևս տղաները չունեին երաժշտական կրթություն, բայց պրոֆեսիոնալները նկատեցին նրանց երաժշտական ճաշակն ու որակյալ երաժշտության նկատմամբ սերը: Այսօր արդեն բոլորն էլ մասնագիտական խորհրդատվություն են ստանում:

4 ընկերների համար հոգեհարազատ են «Բիթըլզ» խմբի կատարումները, որով էլ պայմանավորված է նրանց երգի, բեմական կերպարի, կատարման ու բեմադրության ոճի հարազատությունը և Մանկական Եվրատեսիլիում որպես բիթլոմաններ ներկայանալու նրանց ցանկությունը:

Նախապատրաստական շրջանում «Կոմպաս Բենդ» համույթի կատարողները ՀՀ սփյուռքի նախարարության միջոցով կապ են հաստատել տարբեր երկրների հայ համայնքների հետ, ներկայացրել իրենց «Sweetie Baby» երգը, զրուցել հայկական երիտասարդական կազմակերպությունների ներկայացուցիչների հետ:

«Կոմպաս Բենդն» արդեն Ամստերդամում է, նրանք անդադար փորձերի ու շտկումների փուլում են, ապրում են մշտապես զբաղված ու հագեցած առօրյայով: Մեծ է պատասխանատվության զգացումը. ինչպես իրենք են ասում՝ կանեն առավելագույնը՝ հաղթանակի հասնելու համար, քանի որ երգելու են 10 միլիոն հայերի համար:

Հայ փոքրիկների կատարումն աչքի է ընկնում բարձր պրոֆեսիոնալիզմով, նրանք արժանի են հաղթանակի: «Մանկական Եվրատեսիլում» հաղթանակի համար կարևոր է Սփյուռքում բնակվող յուրաքանչյուր հայի՝ Հայաստանի օգտին քվեարկելու պատրաստակամությունը, վճռորոշ է նաև այլազգիների քվեարկությունը, ինչին կարելի է հասնել հայկական երգը բոլոր հնարավոր միջոցներով տարածելու միջոցով:

Աշխարհասփյուռ 10 միլիոն հայերը կարող են հերթական անգամ միավորվել, քվեարկել հանուն «Կոմպաս Բենդի», հանուն հայկական մշակույթի հաղթանակի:

ՀՀ ՍՓՅՈՒՌՔԻ ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹՅԱՆ ՀԵՏ ԿԱՊԵՐԻ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ

*Հոբելյան*

# Բեմի ութսունամյա փիրուհին

**Կան մարդիկ, որոնց համար փարիզը ժամանակի հասկացություն է միայն, մինչ իրենց գործունեությամբ եւ ապագայի ծրագրերով միշտ մնում են երիտասարդ:**

Հայաստանի ժողովրդական արտիստուհի Ռոզա Մխիթարյանը 80 տարեկան է:

Դերասանուհի, որ աշխարհ է եկել իր արվեստը ժողովրդին յուրովի նվիրելու, շռայլորեն գնահատվելու, սիրվելու, իր անկրկնելի խաղով թե՛ Հայաստանում, թե՛ նրա սահմաններից դուրս դառնալով բազմահազար երկրպագուների ընկալումների ու հույզերի տիրուհին ու նվաճողը:

Դափնիները չեն Ռոզա Մխիթարյան դերասանուհու երջանիկ տքնանքի դիմաց հանդիսատես գնահատողներից ակնկալածը, այլ ընդամենը ընկալված լինելը: Այս առումով էլ երևի թե Ռոզա Մխիթարյանը մտածելու առիթ չունի, քանզի հայ բեմարվեստում սիրված, ծափահարությունների բերկրանքը վաղուց արդեն վայելած դերասանուհի է:

Նա ունի իր մեծ առաքելության հստակ գիտակցումը: Իր գործի այն վարպետ նվիրյալներից է, ով ապրած ժամանակի մեջ և այդ միջավայրում միշտ որպես առաջնային և ամենաբարձր արժեք կարողանում է պահպանել բեմում ստեղծագործողի բարձր պատիվը:

Ճակատագիրը շռայլ գտնվեց մարդկային առաքելությամբ, առաքինող շնորհներով, հմայքով, պայծառ ու վեհ մարդկային հատկանիշներով օժտելու մեջ: Նա իր մեջ ամփոփում է և մարդու և արվեստագետի լավագույն հատկությունները:

Հարգարժան տիկին Ռոզա Մխիթարյան.

Դուք մեր այն երախտավորներից եք, որոնց գնահատանքը դուրս է գալիս իրենց ապրած ժամանակի սահմաններից: Ձեզ ճշմարիտ ու մնայուն գնահատանք բերել է ձեր աշխատանքը, այն աշխատանքը, որին սիրով լծվել եք կես դարից ավելի ի սեր մարդկանց երջանկության:

60 տարի հավատարիմ մնալով արվեստին ծառայելու նվիրումին ու կոչմանը, սերմնացանի նման ցանել եք հոգևոր արժեքներ:

Ազգի ոչնչացումը պայմանավորված է նաև նրա հոգևոր արժեքների ոչնչացմամբ, ասել է թե ազգի գոյատևման նախապայմաններից մեկն էլ հոգևոր սնունդն է, որով կես դարից ավելի սնուցել եք Ձեր




հայրենակիցներին և ստացել նրանց օրհնությունը:

«Գործարար» ամսագրի ստեղծագործական կոլեկտիվը, բազմահազար ընթերցողներ ութ տասնամյակ ուսած, սակայն մտքից պայծառություն, մկաններից երիտասարդություն հորդող, անսպառ ստեղծագործական երևակայությամբ ժողովրդական արտիստուհուն, որ դեռ պատրաստ է կյանքի կոչելու նորանոր բեմադրություններ, որոնց ամեն պահ սպասում են նրա արվեստի երկրպագուները, մաղթում է արևշատություն, բեմական երկարակեցություն, լույս ու անթիվ հորիզոններից եկող ջերմություն:

*«Գործարար» ամսագրի ստեղծագործական խումբ*

*Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ, Հայաստանում «Գործարար» ամսագրի ներկայացուցիչ*

# ԼԱՎԱՇ

Լավաշը հայերի հիմնական հացն է, որը թխում են թոնիրում: Այն ալանի սպիտակ հաց է, որը պատրաստվում է ցորենի ալյուրից բարակ բլիթների տեսքով:

Լավաշը առավելապես տարածված է Հայաստանում, Պարսկաստանում, Վրաստանում և կովկասյան ու արևելյան այլ երկրներում:

Բուրավետ, ախորժաբեր լավաշը հայոց հացերի արքան է: Լավաշի պատմությունը սկսվում է մ.թ.ա 1-ին հազարամյակից. Արտաշատ քաղաքի պեղումների ժամանակ հայտնաբերվել է այդ ժամանակաշրջանի գետնափոր թոնիր: Լավաշը նուրբ, երկար, մինչեւ 70 սմ օվալաձև հաց է, որը բնորոշ է միայն հայերին: Լավաշ թխելը հայ կանանց մենաշնորհն է: Այն թխում են մինչև 1,5 մ խորության և 80 սմ տրամագծով թրծված, հողի մեջ թաղված հատուկ կավե գլանաձև հարմարությունում, որը կոչվում է թոնիր: Գետնափոր կավե թոնիրը որպես ջեռոց հայկական խոհանոցի առաջին ջերմամշակման գործիքներից է:

Լավաշի թխման արարողությանը ամենահետաքրքիր ու ամենաբարդերից է: Գնդերը կլոր լավաշների ձևով փայտե գրտնակով գրտնակելուց հետո գցում են ձվաձև փափուկ բարձի վրա, որը կոչվում է ռաֆաթա կամ բադադ, և խփում թոնրի տաք պատին: Մի քանի րոպե անց լավաշը պատրաստ է: Լավաշը աշխարհի ամենաերկար պահվող հացն է (մոտ 1 տարի): Լավաշը կարելի է չորացնել և շատ երկար պահել, իսկ երբ թրջում են ջրով, այն կրկին թարմանում է: Հայկական խոհանոցում կան ազգային ուտեստներ, որոնք ուտում են միայն լավաշով. առանց լավաշի անհնար է վայելել ո՛չ պանրով բրդուճը, ո՛չ հայկական խաշը, ո՛չ պանրխաշը եւ ո՛չ էլ անուշաբույր խորոված:

Ռուս հայտնի գրող Անդրեյ Բիտովը գրել է. «Լավաշը ուտելիք է, լավաշը պատառաքաղ է, լավաշը անձեռոցիկ է: Հայերը լավաշն ուտում են, լավաշով միս են բռնում, լավաշով այն փաթաթում են»:

Ըստ հայ դիցաբանության՝ հայոց ռազմի աստված Վահագնի և գեղեցկության աստվածուհի Աստղիկի հարսանիքին աստվածների հայր Արամազդը Աստղիկի ուսին լավաշ է դնում: Փեսա Վահագնի տուն գնալու ճանապարհին լավաշը ընկնում է Աստղիկի ուսից: Արամազդը զայրանում է ու ասում. «Հացը գետին ձգողը չի կարող կին ու մայր



դառնալ»:

Այսպես, Վահագնն ու Աստղիկը երբեք չեն կարողանում ամուսնանալ և մնում են հավերժական սիրահարներ:

Եվ մինչ այսօր, հարսանիքի ժամանակ, հայ հարսները զգույշ են քայլում, որպեսզի լավաշն ուսից չընկնի և չունենան Աստղիկի տխուր ճակատագիրը:

Ըստ ավանդության՝ հին Հայաստանում Արամ անունով մի արքա է եղել, որը կռվի ժամանակ գերի է ընկնում ասորիների թագավոր Նոսորին: Ըստ վերջինիս պայմանի՝ Արամ արքան պետք է 10 օր անոթի մնա, իսկ 11-րդ օրը նետաձգությամբ մրցի իր հետ, եթե հաղթի՝ ազատ կարձակվի և յուրայինների մոտ կգնա արքայավայել ընծաներով: Հաջորդ օրը Արամ արքան պահանջում է, որ Ասորաց սահմանի մոտ կանգնած հայկական բանակից բերեն իր ամենագեղեցիկ լանջապանակը: Հայերը գլխի են ընկնում, որ իրենց արքան ինչ-որ բան է ակնարկում, իսկ ասորիներն էլ չգիտեին, որ լանջապանակի մեջ նրբաթերթ հաց է դրված: Այն ժամանակ ոչ ոք չգիտեր լավաշի մասին, իսկ ասորի բանբերների մտքով չէր էլ անցնի, թե հայերը կարող են զրահի մեջ հաց թաքցնել: Արամը ստանում է իր զրահը, բայց ասում է, որ սա չէ իր ամենագեղեցիկ լանջապանակը, պահանջում է մեկ ուրիշը, և ասորի բանբերները 9 օր շարունակ գնում-գալիս են՝ առանց իմանալու, որ իրենց բերած լանջապանակներով ամեն օր մի նրբաթերթ հայկական հաց են հասցնում Արամ արքային:

11-րդ օրը Արամն ու Նոսորը մրցասպարեզ են մտնում: Նոսորին թվում էր, թե 10 օր սոված մնալով՝ Արամն ուժասպառ է եղել, սակայն հայոց արքան իրեն կայտառ էր զգում: Հայկական հացը նրան ուժ էր տվել, նա հաղթում է մրցության մեջ և տուն վերադառնում պատվով: Վերադառնալուն պես հրովարտակ է արձակում, որ այսուհետ Հայաստանում հաստ ու բազմաձև հացերի փոխարեն լավաշ թխեն: Այդ ժամանակներից ի վեր լավաշը դարձավ հայոց հացերի արքան:

Ըստ ավանդության՝ մի հայ իշխան 20 օր բանտարկված է եղել և պետք է ոչինչ չուտեր, որից հետո պիտի կռվեր առյուծի դեմ: Ամեն օր նրան այցելում էր իր թիկնապահը՝ գոտու արանքում գաղտնաբար բերելով թարմ լավաշ: Արդյունքը լինում է այն, որ իշխանը հաղթում է առյուծին: Սա վկայում է, որ լավաշը մեծ զորություն ունի հայոց համար և հայ օջախներում այն իբրև սրբազան նշխար է ընկալվում:

Կախարդական լավաշի խորհուրդը գալիս է դարերի խորքից. այն մեզ սովորեցնում է, որ երջանկությունը աշխատանքի մեջ է: 1988 թվականին «Հեքիաթ Նաղաշ անունով տղայի և հացի մասին, որի անունն է լավաշ» հեքիաթի հիման վրա նկարահանված «Կախարդական լավաշ» մուլտֆիլմը պատմում է Նաղաշ անունով մի բարի տղայի մասին, որն ապրում էր լավաշ թխող իր մայրիկի հետ: Լավաշով է սնվում ու մեծանում նաև Նաղաշը: Բայց հայոց աշխարհում տղաները շուտ են մեծանում, մոռանում մանկական խաղերի մասին ու դառնում օգնական ծնողների համար: Նաղաշն էլ որոշում է գտնել իր «սրտի գործը» ու մոր թխած լավաշներից մեկը վերցնելով՝ ճանապարհ է ընկնում: Փորձությունների ու անհաջողությունների միջով անցնելով՝ Նաղաշը հասկանում է, որ երջանկություն կարելի է գտնել միայն հարազատ հողում: Վերադառնում է տուն, մի լավաշաչափ հող է մաքրում քարերից, վարում է, ցանում, ջրում սեփական քրտինքով, և հողը նրան վարձահատույց է լինում ու առատ բերք պարգևում:

Ներկայացրեց Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆԸ

*Վարդան Այգեկցի*

# ԳԻՆԻ

Թագավորն ուներ մի մինուճար տղա: Հրամայեց իր նախարարներին:

— Ամեն օր ձեզանից յուրաքանչյուրն իմ որդուն թող տանի պատվելու:

Մի օր նախարարներից մեկը թագավորի որդուն տարավ պատիվ տվեց և երեկոյան առաջնորդեց մինչև պալատի դուռը ու ինքը գնաց:

Իսկ թագավորի որդին խիստ հարբած էր: Նա բարձրացավ կտուրն ու ընկավ վայր:

Հաջորդ օրը նրան գտան աղբանոցում մեռած: Եվ թագավորն հրաման արձակեց.

— Քանդեցե՛ք բոլոր այգիները, կոտրեցե՛ք գինու կարասները, որովհետև գինին դարձավ իմ որդու կորստյան պատճառը:

Եվ հրամանը կատարվեց:

Մի այրի կին, որ մեկ որդի ուներ, իր հնձանը քանդեց կարասների վրա և գինին պահեց: Ամեն օր առավոտյան և երեկոյան հացից հետո նա մի բաժակ գինի էր տալիս որդուն խմելու:

Եվ մի գիշեր նրա ուրդին դուրս եկավ տնից և սպանեց թագավորի առյուծին: Հաջորդ առավոտյան թագավորը հայտարարեց.

— Ով առյուծին սպանել է, թող ներկայանա՛, որպեսզի պարգևատրեմ:

Եկան մայր ու որդի.

— Ինչպե՞ս կարողացար հաղթել առյուծին,— հարցրեց թագավորը:

— Գինով եմ սնել իմ որդուն, թագավոր,— ասաց մայրն ու պատմեց բոլորը:

Եվ թագավորը նոր հրաման արձակեց.

— Այգի տնկեցե՛ք, բայց գինին այնպես խմեցեք, որ առյուծ սպանեք և ոչ թե մեռնեք աղբանոցում, ինչպես իմ որդին:

# «Աստված մեկ անգամ ստեղծեց մարդուն, մարդն ամեն օր ստեղծում է իրեն» (ֆոտոշարք)



**Մեր հյուրը ԼՈՒՍԻՆԵ ԱՎԵՏԻՍՅԱՆՆ է: Մեր առաջին զրույցը հայերեն առաջին տպագիր գրքի՝ 500-ամյա «Ուրբաթագրքի» աշխարհաբար թարգմանության և գիտական հրատարակության շուրջ էր:**

**Գրքի բնօրինակի վերծանումը, թարգմանությունը, վանքերի մասին տեղեկատուն, անձնանունների և տեղանունների ցանկ-բառարանները, քարտեզը, Յակոբ Մեղապարտի հարթաքանդակը և գեղարվեստական ձևավորումը Լուսինե Ավետիսյանինն են:**

**Արվեստասեր հասարակությանը նա հայտնի է նաև իր օճառե քանդակներով, որոնք ցուցադրվել են «Նարեկացի» արվեստի միությունում, ապա Ժողովրդական արվեստի թանգարանում, «Ուրբաթ» մամուլի ակումբի ցուցասրահում, Կամերային երաժշտության տանը և մշակութային այլ կենտրոններում: Յրավերներ է ստացել Մոսկվայում ցուցահանդեսով ներկայանալու: Նրա աշխատանքները ներկայացվել են Մոսկվայի առաջին հեռուստաալիքով, ԱՊՅ երկրների Мир հեռուստատեսության Вместе + հաղորդաշարով, Мир ռադիոալիքով:**

**- Յե՞շտ է օճառի հետ աշխատելը:**

-Հեշտն ու դժվարը չգիտեմ, բայց հաճելի է: Իսկ եթե լուրջ, և հեշտ է, և դժվար, նայած որ նյութի հետ ենք համեմատում: Ի տարբերություն կավի՝ բավականաչափ զգուշություն է պահանջում, քարից ավելի դյուրին է տրվում երևակայությանդ ձևերին, փայտին հակառակ՝ համասեռ զանգված է: Իսկ նրա միակ խոցելի կողմը մարմնավորած կերպարների՝ հավերժության ձգտմանը հակադրվող վաղանցիկությունն է:

**-Որքա՞ն կարող են պահպանվել դրանք:**

-Վնասվելուց պաշտպանելու եղանակներ եմ փնտրում: Առայժմ միայն լաքապատումն է տրվել հնարամտությանս, որով բավականաչափ պաշտպանվում են խոնավությունից և եթերայուղերի տարբալուծումից: Գուցե շուտով փորձեմ ձուլել դրանք երկարակյաց նյութերից: Իսկ 10-12 տարվա օճառե քանդակները դեռ գոյատևում են:

**-Նյութի պակասի՞ց, թե՞ ուրիշ մի մղումով ձեռքը մեկնեցիք օճառին:**

- Փոքրիկ գյուտ էր, որ իրականում նյութի պակասից ծնվեց, սակայն լրացրեց քանդակագործական նյութերի շարքը և դարձավ իմ ներաշխարհին արտաշխարհացնող սուբստանց:

**-Կա՞ն արվեստագետներ, որ աշխատում են օճառով:**

- Սկզբում փնտրեցի ու չգտա որևէ մեկին, ով քանդակներ ստեղծեր օճառից, սակայն ավելի ուշ նյութն ինձ համար կորցրեց կարևորությունը՝ տեղը զիջելով այն կերպարներին, որոնք ձգտում էին մարմին առնել պարզապես որևէ նյութից: Իմ քանդակներից մեկը վերնագրեցի «Հոգի» և բնաբան գրեցի. «Ափսոս, որ աշխարհում ապրելու միակ հնարավոր եղանակը նյութի մեջ մարմնավորվելն է…»:

**- Ժամանակակից տեխնոլոգիաները, նյութերը օգնո՞ւմ, թե՞ խանգարում են արվեստագետին:**




- Ոչինչ չի կարող խանգարել արվեստագետին, ավելին, արվեստագետն ամեն ինչ կարող է ծառայեցնել իր արվեստին, որ վեր է բոլոր նյութերից, և նյութը կարևոր է այնքանով, որքանով անհրաժեշտ է գաղափարի մարմնավորման համար: Այն միշտ պիտի ստորադասվի գաղափարին, այլապես գաղափարը լավագույն դեպքում կենթարկվի զեղչումների, վատագույն դեպքում՝ կաղապարի կվերածվի:

**- Քանդակ-պոեզիա շարք ունեք: Պոե՞տ, գրականագե՞տ, թե՞ քանդակագործ Լուսինեին են ավելի շատ ճանաչում:**

- Կարծում եմ, որ զուտ քանդակ, զուտ պոեզիա չկա, և առհասարակ որևէ արվեստի գործ զուտ լինել չի կարող: Երևակայությունն այն աներևույթ ալքիմիկոսն է, որն աննկատ փնջում է ճկուն սիլուետներ, թրթռուն ելևէջներ, բյուրեղացած մտորումներ ու խաղացկուն զուներանգներ՝ հաստատ համոզվածությամբ, որ փնտրված «փիլիսոփայական քարը» հենց այդ շաղախից պիտի ձուլվի: Այդպես էլ չկան զուտ պոետ, զուտ քանդակագործ, զուտ գիտնական: Հիշեցի ֆրանսիացի բանաստեղծ Սեն-Ժոն Պերսի հետևյալ տողը. «Մտքի յուրաքանչյուր ստեղծագործություն նախ և առաջ պոետական է»: Ովքեր ճանաչում են ինձ, հենց այս համադրությամբ են ճանաչում:

**- Ի՞նչ գնահատականների եք հանդիպում: Ի՞նչ «մաղով» է անցնում Ձեր արվեստը: Յամաձա՞յն եք, որ ամենաճիշտ գնահատականը ժամանակն է տալիս:**

- Թեև մասնագիտական կրթություն չունեմ, սակայն քանդակների մասին հիմնականում հիացական արտահայտություններ եմ լսել, անգամ նրանցից, ովքեր որպես մասնագետներ ինչ-որ թերություններ են տեսել գործերում՝ խոստովանելով, որ անկեղծությունն ու նրա բացահայտ դրսևորումներն են հիացմունք պատճառում դիտողին, և որ աշխատանքներից յուրաքանչյուրը մի փոքրիկ հուզիչ պատմություն է: Շատ մասնագետներ էլ, չիմանալով, որ պրոֆեսիոնալ չեմ, փորձել են պարզել՝ այստե՞ղ, թե՞ Ռուսաստանում եմ ստացել կրթություն: Քանդակները բարձր գնահատականի են արժանացրել շատ նկարիչներ ու քանդակագործներ՝ Հակոբ Հակոբյանը, Խաչատուր Իսկանդարյանը, Վահան Տերունին, Խաչիկ Միրիջանյանը, Արարատ Հովսեփյանը, Գետիկ Բաղդասարյանը, Վիգեն Ավետիսը, արվեստաբան Սարո Սարուխանյանը և այլք: Իսկ ժամանակը չի գնահատում, այն հնարավորություն է տալիս ճիշտ գնահատելու:

**- Կանացի խոհական ու ճկուն ֆիգուրներն են գերակշռում Ձեր գործերում: Թեմաները նույնպես բարի են ու ավելի շատ հոգևոր: Ճի՞շտ եմ նկատել:**

- Համոզմունք է, որ յուրաքանչյուրը ստեղծում է իրեն: Արվեստը ինքնաճանաչման ազնվագույն ճանապարհ է: Ամեն մի ստեղծագործությամբ արվեստագետն ավելի է մոտենում այն մթին զանգվածին, որ իր էությունն է, ավելի ճիշտ՝ էությունն է մարդ արարածի: Ուրեմն, որքան շոշափելի լինելու աստիճանի մոտենա իրեն, այնքան կնմանվի գեղարվեստական հայելու, որում յուրաքանչյուրն իրեն

⊃13



12⊃

կտեսնի, ավելին, կփափագի տեսնել, ուստի՝ վերստեղծել իրեն՝ ըստ այդ արտացոլանքի: Այստեղ էլ թաքնված է արվեստի մոգական ուժը: Աստված մեկ անգամ ստեղծեց մարդուն, մարդն ամեն օր ստեղծում է իրեն: Արարչագործությունը դեռ շարունակվում է:

մշտակա, ինչպես Աստծո ներկայությունը: Նրա էության եզրագծումը նշմարելի է միայն Հավերժության հայելու անդրադարձումներում:

**- Թարգմանել եք «Ուրբաթագիրքը»: Ի՞նչ գիտենք մեր առաջին տպագիր գրքի մասին:**

- «Ուրբաթագիրքը» բուժիչ աղոթքների, «Ուրբաթագրքին» «Նարեկի» պես բուժիչ զորություն է վերագրվել: Ամփոփում է գեղարվեստականորեն բարձրարժեք չափածո աղոթքներ, որոնք նույնքան գրավիչ ու հրապուրիչ են հնչում աշխարհաբարով, որքան գրաբար բնագիրը:

**- Մենք քննադատող ազգ ենք դարձել ու ավելի շատ վատի մասին ենք խոսում, նկատե՞լ եք:**

- Մենք կորցրել ենք ներդաշնակությունը: Մենք ունենք հազարամյակներով բյուրեղացած արժեքներ և դրանց կողքին՝ արագընթաց ու արդեն խկապես հոգնած Եվրոպային հասնելու անդիմադրելի ձգտում: Բազմաթիվ օբյեկտիվ պատճառներ խախտում են մեր ներքին խաղաղությունը: Բոլորն են զգում, որ ինչ-որ բան կամ բազում բաներ սխալ են մեր կյանքում, և եթե սկզբում իսկապես սխալները մատնանշում էինք՝ շտկելու համար, հետզհետե ծուլանում ենք, ու ավելի հեշտանում են ամեն ինչ տեղիանտեղի քննադատելն ու դրանով բավականանալը: Այսօր սա իրոք մեր հասարակության ներսում գոյություն ունեցող արատներից մեծագույնն է: Ես չեմ ընդունում անհիմն լավատեսությունը, պարզապես գիտեմ, որ միտքը, խոսքը նյութականանալու հակում ունեն: Ամեն մեկիցս է կախված մեզ շրջապատող լույսի պայծառությունը: Ժխտում պարունակող բառերը չեն կարող բարություն սերմանել:







**- Ալիսիա Կիրակոսյանն ասում է՝ «Սիրո հակառակն ամենևին էլ չսիրելը չէ, մահն է պարզապես»: Սիրո Ձեր բանաձևը:**

- Հնարավոր չէ վերլուծության ենթարկել մի բան, որ չի կրկնվել և չի կրկնվելու երբևէ, որովհետև յուրաքանչյուրն իր եզակիության համեմատ է այն ապրում: Անհնար է սահմանումներ տալ նրան, ինչը չի ընդունում բանաձևեր: Այն, ինչի մասին պատմում են, երգում, նկարում, սիրո թողած ազդեցությունն է: Յուրաքանչյուրն իրեն հասու ճամփաներով փորձում է բացահայտել գաղտնիքը այդ հին ու մթին առեղծվածի, սակայն այն մնում է անընդգրկելի, ինչպես տիեզերքը, աննկարագրելի, ինչպես Աստծո էությունը,

պահպանագրերի, չար ուժերը շղթայող բանաձևերի, սաղմոսների, կիսաառասպելական զրույցների, մաղթանք-աղերսանքների մի ժողովածու է, որի կիրառելիությունն ու կարևորությունը հայ մարդու կյանքում հաշվի առնելով՝ Հակոբ տպագրիչը ձեռնարկեց առաջինը այն տպագրել՝ հիմք ընդունելով պահանջարկ վայելող ձեռագիր ուրբաթագրքերից մեկը: Հանձնարարվել է կարդալ ուրբաթ օրը, որ Հայ առաքելական եկեղեցու տոնացույցում համարվում է Քրիստոսին մարմնավորած Սուրբ խաչի օր և ունի երկակի բնույթ. զգուշավորության օր է, քանի որ և՛ մարդու արարման, և՛ Մարդու Որդու խաչելության օրն է միաժամանակ:

Մայր Թերեզան հայտարարում էր. «Ես չեմ գնա ցույցի՝ «Ընդդեմ պատերազմի», եթե ինձ հրավիրում են ցույցի՝ «Հանուն խաղաղության»:

Ասել, որ մութ է, նշանակում է ոչինչ չասել, ավելին, նշանակում է մութն ավելացնել: Ասել, որ լույս չկա, նշանակում է ընդգծել լույսի բացակայությունը, լույսի, բայց ամեն դեպքում բացակայությունը: Մինչդեռ կարելի է ասել՝ Լույս է անհրաժեշտ... Եվ այս դեպքում արդեն հաստատ այն գտնելու ճանապարհին ես...

**- Լուսինե, Բոտերոյի քանդակը հա-**

⊃14







13➲

**վանո՞ւմ եք. դժգոհության աղմուկը դադարեց, բայց քանդակն իր տեղում է, և դժգոհողները, ուզած թե չուզած, հանդուրժելու են նրա ներկայությունը:**

-Ինքս հանդուրժող եմ արվեստի բոլոր գործերի նկատմամբ: Իհարկե, արվեստի բարձրարժեք գործեր եմ համարում







նրանք, որոնք հաճելի զգացողություններ են առաջացնում՝ առթելով ներաշխարհի ճեղքերն ապաքինող թրթռացումներ: Իր տեսակի մեջ հետաքրքիր աշխատանք է, Բոտերոն էլ այդպե՛ս է տեսնում աշխարհը: Բայց ուրիշ է արվեստի գործը իր արժանիքներով ու թերություններով գնահատելը, ուրիշ՝ քաղաքի կենտրոնում տեղադրելով՝ այն անգիտակցական ու ենթագիտակցական շերտերին ամենօրյա ազդակներ ուղարկող ալեփյուռ դարձնելը: Աշխարհին իր խտացուցիչով ընկալած ամեն արվեստագետի ամեն հետաքրքիր աշխատանք չէ, որ կարող է զարդարել մայրաքաղաքի դեմքը: Եվրոպայում շատ կան քաղաքներ, որոնց կպատշաճեր այդ քանդակը, բայց ոչ Երևանին: Արվեստի գործի ընկալումը ճաշակի խնդիր է, բայց ոչ երբեք հիմք՝ ճաշակ թելադրելու:

**- Երևանը սիրո՞ւն քաղաք է:**

-Այո, ամեն ինչ փոփոխվում է, և Երևանը նախկին սուրբ ու հարազատ դիմագծերը կորցրած գեղեցիկ քաղաք է:

**- Ծրագրերի մասին:**

- Նպատակների վերածված գաղափարներ շատ կան, որոնք սպասում են իրենց հերթին՝ կյանքի կոչվելու համար: Ունեմ նոր թարգմանություններ, որոնցից ուզում եմ հատկապես հիշատակել Անանիա Շիրակացուն վերագրված, բայց իրականում 10-րդ դարի գիտնական և փիլիսոփա Անանիա Նարեկացու գրչին պատկանող, երբևէ չթարգմանված «Սակս բացայայտութեան թուոց» աշխատությունը:

«Ուրբաթագրքի» առնչությամբ նոր ու հետաքրքիր ծրագրեր կան: Կարծում եմ՝ արժի աշխարհաբարի վերածել Հակոբ Մեղապարտի հրատարակած մյուս 4 գրքերը ևս՝ ստեղծելով հայկական գրատպության առաջին գրքերի գեղեցիկ մի հնգյակ:

***Արմինե ՍԱՐԳՍՅԱՆ***

# ՕՏԱՐՆԵՐԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

Մատենադարանը՝ համաշխարհային մշակույթի մեծագույն տաճարներից է, որտեղ ոտք ես դնում մեծարանքով, գլուխ խոնարհելով նմանատիպ հիասքանչ մշակույթ կերտած իմաստուն ժողովրդի տաղանդի և տոկունության առջև:

**Ս. Սմիրնով**

Ծառայել Հայաստանին՝ նշանակում է ծառայել քաղաքակրթությանը:

**Ու. Գլադսոն**

Հայաստանը քաղաքակրթության բնօրրանն է:

**Դեվիդ Լենգ**

# ՏՂԱՆԵՐԸ ՄԵԾԱՑԵԼ ԵՆ ՈՒ...

Գուցե ոմանց թվա, թե այս հոդվածը տեղին կլիներ տպագրել գարնան սկզբին, ասենք՝ մարտի 8-ից ապրիլի 7-ն ընկած ժամանակամիջոցում: Բայց ես այդպես չեմ մտածում, քանի որ սա ավելի շատ տխուր հոդված է, քան ուրախ: Ինչո՞ւ: Քանի որ մեր այժմյան դրությունը (ցավոք՝ ոչ նախանձելի) պայմանավորված է նաև այդ գործոնով: Էլ ի՞նչ կապ ունի կանանց տոնը...

Ըստ իս՝ իր մարդկային հատկանիշներով հայ կինն ավելի լավն է, քան հայ տղամարդը: Իհարկե, թե՛ կանանց, թե՛ տղամարդկանց պարագայում լինում են բացառություններ, բայց ընդհանուր առմամբ, կոպիտ ասած, կանայք ավելի լավն են, սակայն, չգիտես ինչու, երկիրն ու մեզ ղեկավարում են տղամարդիկ: Քանի՞ փափկասուն տիկին կա կառավարությունում: Իսկ Ազգային ժողովո՞ւմ...

Դե լավ, չձգձգեմ, այլ փորձեմ բացատրել, թե նախ ինչու հենց հիմա՝ նախագահական ընտրություններին նախորդող ներքաղաքական կատակլիզմների այս շրջանում որոշեցի խոսել այս մասին՝ չսպասելով մինչև լավ ու բարի օրերը՝ կանանց միամսյակը: Հենց միայն նրա համար, որ վերը նշված փաստն անձամբ ինձ բնավ չի ուրախացնում: Ոչ միայն այն պատճառով, որ ես հակառակ սեռի ներկայացուցիչ եմ, այլև այն պատճառով, որ խտրականությունը, անհավասարությունը համարում եմ անբնական երևույթ: Ըստ իս՝ ամենևին էլ լավ չի, որ մեր կանայք ավելի լավն են, քան տղամարդիկ: Չէ, սա ավելի շատ ինձ տխրեցնում է, քան ուրախացնում:

Երկրորդ. իսկ ո՞վ ասաց, որ այդպես է: Այս հարցին շատ հեշտ է պատասխանելը: Նայում ես չորս կողմդ ու համեմատում, ապա սկսում ես մտորել այդ հարցի շուրջ, որը շատ ավելի հետաքրքիր է: Իմ խորին համոզմամբ՝ պատճառը դաստիարակությունն է: Ավանդական դաստիարակությունը հակադրվում է մերօրյա իրականությանը: Փորձենք համեմատել, թե հայ ընտանիքներում ինչպես են դաստիարակում աղջիկներին, ինչպես՝ տղաներին: Համարձակվում եմ պնդել, որ մեր աղջիկներին (սկսած շատ վաղ հասակից մինչև ամուսնության շեմը) շատ ավելի ճիշտ են դաստիարակում, և հենց այդ պատճառով նրանք մեծանում են՝ շատ ավելի հարմարված ժամանակակից կյանքի պահանջներին, ընդունակ գլուխ հանելու ստեղծված իրավիճակում: Որպեսզի ասածս մերկապարանոց չհնչի՝ փաստեր բերեմ:

Ընտանիքում ո՞վ է սովորաբար զբաղվում երեխայի դաստիարակությամբ: Հիմնականում՝ մայրը, երբեմն՝ տատիկը: Հազվադեպ նրանց օգնության է գալիս պապիկը, շատ ավելի հազվադեպ՝ հայրը: Մայրիկները (և տատիկները) գիտեն՝ ինչպես դաստիարակել աղջիկներին, բայց, ավաղ (չնչին բացառություններով), չգիտեն, թե ինչպես է ճիշտ դաստիարակել տղա երեխային: Շատ վատ է նաև այն, որ անգամ հոր ակտիվ միջամտության դեպքում չենք կարող պնդել, թե արդյունքը լավ կլինի: Քանի որ նախ՝ ժամանակին հայրիկներն էլ իրենց ընտանիքում ճիշտ չեն դաստիարակվել: Եվ ամեն դեպքում հայրիկները չեն կարող (կամ չեն ուզում) պատշաճ ուշադրություն



և ժամանակ հատկացնել այդ գործին: Երբ տղաների դաստիարակությամբ զբաղվում են միայն մայրերը, նրանք դառնում են կամ «մամայի բալա»՝ նուրբ ու քնքուշ (եթե ավելին չասենք), կամ մի քիչ դյուրագրգիռ ու դյուրաբորբոք, կամ (շատ ավելի հաճախ) ինքնավստահությունից զուրկ և կամ քմահաճ ու կամակոր: Չի բացառվում նաև՝ ամբողջ փունջը: Եվ բոլոր դեպքերում ձևավորվում է պատասխանատվության զգացումից զուրկ երեխա: Այո, այո, մեր՝ թվում է, թե աշխատունակ ու գործունյա տղամարդկանց բնավորության առաջին գիծը, որն աչքի է զարնում առաջին հերթին, անպատասխանատվությունն է: Անպատասխանատվությունը թե՛ քաղաքականության ոլորտում ընդհանրապես, թե՛ պետության կառավարման մեջ մասնավորապես:

Վերադառնանք դաստիարակության խնդիրներին: Հայ ընտանիքներում աղջիկների հանդեպ ավելի խիստ են, քան տղաների: Դեռ մանկուց աղջիկներից պահանջում են լինել կոկիկ: Բոլոր հարցերում: Չի կարելի թափթփված լինել, պետք է կանոնավոր դասավորել խաղալիքները, կոկիկ սանրել մազերը, մաքուր պահել շորերը: Փնթի աղջիկը... Չէ, այդպիսիք պարզապես չեն լինում: Գուցե շատ վաղ հասակում ինչ-որ բան այնպես չի արել, բայց տարիների հետ այդ ամենը նրա բնավորությունից արմատախիլ են անում այն պարզ տրամաբանությամբ, որ փնթի աղջկան հարս չեն տանում: Ճիշտ է, դարձյալ բացառություններ լինում են, բայց մենք խոսում ենք ընդհանուր օրինաչափությունների մասին:

Փողոցում հանդիպում ես գեղեցիկ սեռի ներկայացուցիչների: Եթե անգամ շա՜տ գեղեցիկ չեն, եթե նույնիսկ անճաշակ են հագնված, միևնույն է, կոկիկ են: Իսկ երբ ուզում են աշխատանքի ընդունվել, գործատուն առաջին հերթին հենց այդ հատկանիշի վրա է ուշադրություն դարձնում: Ճիշտ է, այդ մասին բարձրաձայն չի ասվում (ավելորդ ոգևորություն չառաջացնելու և բարձր աշխատավարձ վճարելուց խուսափելու նկատառումով), բայց չասել չի նշանակում չնկատել:

Իսկ տղամարդի՞կ: Փոքրիկ մի օրինակ բերեմ: Սխալված չեմ լինի, եթե ասեմ, որ տղամարդկանց մեծ մասը սափրվում է տոնից տոն: Եղունգների խնամք, մաքրակենցաղություն. ոմանց կարծիքով՝ սրանք հիմնականում աղջիկներին վերաբերող հարցեր են: Իզուր եք այդպես մտածում, պարոնայք: Կոկիկությունը համամարդկային հատկություն է:

Մեկ այլ հատկություն՝ աշխատասիրությունը: Աղջիկները հիմնականում այլընտրանք չունեն, ուզած-չուզած մայրիկին պետք է օգնեն: Իսկ տղանե՞րը: Բա սազո՞ւմ է, որ տղան գործ անի, մայրիկին օգնի: Հայրիկին կարելի է, բայց նրան օգնելու ի՞նչ կա որ: Հայրիկը, եթե անգամ աշխատում է, ապա՝ աշխատավայրում, տանը նա հանգստանում է: Հենց դա էլ տեսնում է երեխան և վաղ մանկությունից ընդունում, որ հոր գործը տանը հանգստանալն է: Գուցե դրսում հայրը շատ ծանր աշխատանք է անում, բայց երեխան դա չի տեսնում, ու նրան թվում է, թե աշխատելը տղամարդու գործ չէ:

Բարեխղճություն, պարտաճանաչություն: Սրանք ինքնըստինքյան բխում են աշխատասիրությունից: Չկա պատճառը, չկա և հետևանքը: Անգամ դպրոցում աղջիկներից պահանջում են բարեխղճություն ու պարտաճանաչություն, իսկ տղաներից՝ ընդունակություն: Տղա երեխաներին հենց այդպես էլ գովում-խրախուսում են՝ ընդունակ է, բայց՝ ծույլ: Ասել է թե ոչինչ, կմեծանա, ծուլությունը կանցնի, իսկ ընդունակությո՞ւնը... Արի ու տես, որ ծուլությունը չի անցնում, ընդունակությունն էլ մնում է ընդունակություն՝ հաճախ չվերածվելով հմտության: Պարտաճանաչության ու բարեխղճության մասին էլ չխոսենք:

Ասում են՝ տղաներին նաև բակն ու փողոցն են դաստիարակում: Եթե անգամ ընտանիքից դուրս դաստիարակվում են ինչ-ինչ կարևոր գծեր, ապա մեր օրերում դրանք չեն խաղում այն էական դերը, ինչ կարող էին խաղալ մի 20-30 տարի առաջ: Փողոցը կարող է այնպիսի տղամարդ դաստիարակել, որին բոլորը հարգում են, բայց որն աշխատանք չունի, քանի որ չունի մասնագիտություն և աշխատելու կարողություն:

Եվ տեսեք, թե ինչ է ստացվում: Գործատուները հակված են աշխատանքի ընդունել երիտասարդ աղջիկների՝ անտեսելով նույն տարիքի տղաներին: Իհարկե, տարբեր գործոններ են դեր խաղում, դրանցից մեկն էլ այն է, որ աղջիկներին կարելի է ցածր աշխատավարձ վճարել, իսկ տղամարդուն դժվար է նման բան առաջարկելը: Մյուս կողմից էլ՝ աղջիկը կամուսնանա, երեխա կունենա, կնստի տանը: Թեպետ այս գործոնը հիմա դեր չի խաղում. ամուսնանում են, երեխա են ունենում, բայց տանը չեն նստում: Համենայն դեպս նրանք, ովքեր Հայաստանի չափանիշներով կարգին գործ ու աշխատավարձ ունեն:

Իսկ մեզ (ասել է թե՝ երկիրը) ղեկավարում են մեծացած տղաները: Գուցե դա է պատճառը (գուցե ոչ գլխավորը), որ ունենք այն, ինչ ունենք: Բայց եթե քննարկում ենք մեր այսօրվա վիճակը, ապա չպետք է շրջանցենք նաև այս հարցը:

***Արա ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ***

# Առնետների ոռջը



Ինչ նախատեսված է յուրաքանչյուրիս, պետք է լինի:

Պայքարես, թե ոչ, միևնույն է՝ ոչինչ չես փոխի:

Ինչո՞ւ ենք մենք այդպես անտարբեր կյանքի նկատմամբ, բայց միաժամանակ՝ կառչած նրանից:

Կարճ ասած՝ ատում ենք կյանքը, բայց ցանկանում ենք ապրել...

***

Խմբագրի ձեռքը մեկնվեց սեղանի հեռախոսի կոճակին:

- Լարիսա՛, արի՛ ինձ մոտ:

Երբ Լարիսան մտավ ներս, խմբագրի աչքերն ուրախացան: Միշտ էլ մեծ հաճույքով էր ընդունում այդ գերժամանակակից աղջկան:

- Նստի՛ր: Դու, ճիշտ է, արտահաստիքային ես, բայց այսպես ասած՝ լավության կարգով քեզ մի առաջադրանք եմ ուզում տալ: Արդեն երրորդ ամիսն է, չէ՞, որ հոնորար չես ստացել:

- Այո՛, դե, գիտեք իմ դրությունը...

- Գիտեմ, գիտեմ, - խմբագիրը մի թուղթ վերցրեց ու ուշադիր նայելով՝ շարունակեց:

- Մի կարգին հոդված է պետք անտունների, այսպես ասած՝ «բոմժերի» մասին: Զգայացունց հոդված: Սա լուրջ պատվեր է, հոնորարդ կլինի չպատկերացրած չափի: Եթե համաձայն ես, կարող եմ ձևակերպել:

- Ես, իհարկե, համաձայն եմ: Հենց այսօրվանից կսկսեմ...

- Չէ՛, դու չհասկացար: Դու պետք է նրանց մեջ լինես, հասկանո՞ւմ ես: Մի քանի խմբագրություններ են նույն պատվերը ստացել: Այնպես որ, պետք է լինի չափազանց անկեղծ ու իրական: Հոնորարը այնքան մեծ է, որ պետք է կիսվի իմ և քո միջև: Հուսով եմ՝ հասկացար: Մենք պետք է անպայման հաղթենք: Միգուցե հոդված չլինի, լինի պատմվածք կամ... Հուշելու համար ասեմ, որ կարող ես նրանց գտնել որևէ գերեզմանոցի տարածքում, մոտակայքում, չգիտեմ, իմ ունեցած տվյալները դրանք են: Ունես երկու օր:

- Հասկացա, - Լարիսան վեր կացավ ու դուրս եկավ սենյակից:

***

Ինչպես կարգն է՝ գերեզմանոցում մեռելային լռություն էր:

Սպիտակ ձյունն այնքան խնամքով էր տարածվել բոլոր գերեզմանաքարերին, որ ասես մի հոգատար ձեռք էր ծածկել մոմե դեմքերով, սև, դասական ոճի կոստյումներով ննջեցյալներին:

Ոչ մի ոտնահետք չկար ձյան վրա:

Կիսամերկ, քրքրված շորերով կինը՝ թևի տակ սեղմած մի սև պայուսակ, կարծես նպատակամղված քայլում էր որոշակի գերեզմանի ուղղությամբ:

Գերեզմանային լռությունն այքան էր ազդել նրա վրա, որ չէր կարողանում նկատել տարբեր կողմերից հեռվից իրեն հետևող, ցնցոտիավոր երեք մարդկանց:

Ընտրեց պատահական մի գերեզման, որի մուտքը հաղորդալարի կտորով էր փակած, բացեց դռնակը, մոտեցավ տապանաքարին՝ նախապես ձեռքի պայուսակը կախելով ցանկապատի սրածայր ցցերից մեկին:

Սառած ձեռքերով փորձեց մաքրել ձյունը տապանաքարի վրայից, նստեց մեջքով դեպի դռնակը:

«Պայուսակումս լուցկի ու խունկ կա: Մի՞գուցե նաև փորձեմ վառել, համ էլ՝ կարող է ծուխը հեռվից երևալ», - մտածեց ու շուռ եկավ դեպի դռնակի կողմը:

Պայուսակն արդեն չկար:

Դռնակից դեպի գերեզմանների խորքը ձգվում էին ոտնահետքեր:

Վախից դողացող ոտքերով փորձեց քայլել դեպի գերեզմանից դուրս տանող դռնակը, բայց չկարողացավ:

Հասկացավ, որ ցուրտը թույլ չի տա երկար ժամանակ մնալ այդպես անորոշ վիճակում:

Վեր կացավ, սկսեց քայլել ոտնահետքերի ուղղությամբ՝ մտքում անիծելով այն պահը, երբ համաձայնեց խմբագրի առաջարկած գործարքին, բայց, դե, փող է հարկավոր...

Հետքերը տարան գերեզմանոցի պարսպին կպած մի հին, առանց պատուհանների ու դռների շինության մոտ: Պարզ երևում էին դեպի նկուղ տանող ոտնահետքերը, բայց սիրտ չարեց մտնել ներս:

Նստեց մի անտաշ քարի վրա ու սկսեց դողացնել:

Ներսից լսվում էին խուլ ձայներ:

Երբ սկսեց կամաց-կամաց մթնել, ներսից երևաց կրակի լույսը: Ու անկարող դիմադրելու վախին՝ մի կերպ բռնվելով քանդած պատերից՝ իջավ նկուղի ուղղությամբ:

Մոտ տասը զույգ աչքեր չռվեցին անծանոթ ստվերի վրա: Հետո մեկը, որի ոտքերին թելով կապած նախկին կոշիկի տակացուներ էին, մի քիչ քաշվելով՝ տեղ տվեց կրակի մոտ:

- Արի՛, տաքացի՛ր, Կամբալա՛, Կամբալա՛:

- Ի՞նչ, - մի կերպ ատամները ցրտից չխչխկացնելով՝ հարցրեց Լարիսան:

- Ոչի՛նչ, ուշադրություն մի՛ դարձրու: Նրա սովորությունն է: Նա էլ է նորերից, - ասաց քիչ տարեց մի կին ու մոխրոտ կարտոֆիլը մեկնեց Լարիսային:

- Կամբալա՛, Կամբալա՛, առնետներին չսպանե՛ս: Է՛ն խաչը վկա, նրանք մարդկանցից լավն են, մեզ նման են... Մենք մարդկային առնետներն ենք ու ապրում ենք առնետների օրենքով...

- Իսկ ի՞նչ է նշանակում Կամբալա:

- Չգիտեմ: Գեղեցիկ է հնչում,ականջ շոյող:

Մի պահ Լարիսային թվաց, թե այդ տղամարդը երիտասարդ է, ուղղակի մազածածկ ու անխնամ դեմքը ծերացնում են: Հետո շրջվեց մյուսներին նայելու ու մոռացավ նրան:

Աչքերով հաշվեց: Ութ հոգի էին՝ երեք կին և հինգ տղամարդ: Ինքն իններորդն էր:

Մտքում ապագա հոդվածի նախաբանն էր:

«Այստեղ մահանում են հաճախ և անսպասելի, բայց հիվանդանում են հազվադեպ, որովհետև դա նրանց համար համարվում է շքեղություն: Բնական է, որ այստեղ «Շտապ օգնություն» կանչելու մասին մտածելն անիմաստ է...»:

Չգիտես ինչու, զույգ-զույգ սկսեցին մի կերպ տեղավորվել կրակին մոտիկ:

Մնացին ինքը, Կամբալան ու մի տղամարդ, որը մոտեցավ՝ ընդհատելով մտքերը:

- Դու այսօրվանից իմը կլինես: Ես զույգ չունեմ: Գրկած կքնենք ու չենք մրսի: Կամբալան նոր մարդ է, նրան չի հասնում, իմ հերթն է:

Դեղին, կոտրված ատամները, կիսածածկ մարմինն ու վրայից եկող անտանելի միզահոտը զզվանք առաջացրին, ու դեմքը մի կերպ շրջելով՝ փորձեց ինչ-որ բան ասել...

- Ինձ չի կարելի, խնդրում եմ, - չհասցրեց վերջացնել, և տղամարդը, ձգելով մազերից, փորձեց քաշել դեպի իրեն:

Տղան, որին Կամբալա էին կոչում, վեր թռավ տեղից, ու սկսվեց մի տուրուդմփոց: Մարդկային առնետների պայքար էր՝ իր բաժինն առնելու, խժռելու:

Հաղթեց երիտասարդությունը: Կամ էլ՝ վեճ սկսած տղամարդը, կռվից տաքանալով, մի կերպ հետ քաշվեց:

- Դեռ ցո՛ւյց կտամ ձեզ:

➲17

**16**

Կամբալան մոտեցավ, բռնեց ձեռքից ու քաշելով դեպի իրեն՝ պառկեցրեց կրակին մոտիկ՝ իր տեղում, իսկ ինքը տեղավորվեց նրա հետևում, ձեռքը գցեց ուսին ու ծանր շնչելով՝ վառեց արդեն՝ երևի երեք անգամ հանգցրած մի ծխախոտ:

«Ոչի՜նչ, թող մա ձեռքը, այսպես ավելի լավ է, քան...»:

Կարծես խաղաղվեց նկուղում:

Սակայն սկսվեցին ձայներ ու հոգոցներ լսվել, ասես մի խմբակային սեռական համերգ լիներ: Բայց Լարիսան առանց ուշադրություն դարձնելու սկսեց իր մտքերը դասավորել:

Քիչ հետո ջրի ձայն լսեց: Գլուխը շրջեց ու կիսամութի մեջ տեսավ, թե ինչպես է իր համար կռվող տղամարդը նկուղի անկյունում ընդամենը երեք մետր այն կողմ կանգնած միզում:

Հետո մոտեցավ նրան, մեկնեց մի կիսատ կեղտոտ գինու շիշ ու.

- Ազի՜զ, ուզո՞ւմ ես խմես:

Լարիսան փակեց աչքերը: Սիրտը խառնում էր:

«Աստվա՜ծ իմ, ինչքա՞ն կարող եմ դիմանալ այսպես: Ես էլ եմ զուգարան ուզում, բայց ինչպե՞ս, որտե՞ղ, մի՞թե հենց սրանց աչքի առաջ...»:

Մեջքի հետևից գլուխը բարձրացրեց Կամբալան, ու փորձ արեց վեր կենալ:

Գինու շիշը բերանը դրած մարդը հեռացավ իր տեղը:

- Առնետների որջին բարի գիշե՜ր, Կամբալա՜, Կամբալա՜: Վերջացրե՜ք սեռական արշավանքները, իսկ, եթե հանկարծ գիշերը մեկն ու մեկը փորձի իմ կնկան մոտենալ, Կամբալա՜, Կամբալա՜, կմորթեմ առանց մտածելու:

Լարիսան շուռ եկավ դեպի նա ու շշուկով ասաց.

- Զուգարան եմ ուզում, որտե՞ղ...

- Արի՜: Ժամանա՞կ գտար:

Վեր կացավ, բռնեց ձեռքն ու համարյա ուժով քաշեց դեպի կողքի կիսաքանդ սենյակը:

- Այստեղ կարող ես, Կամբալա՜, Կամբալա՜:

- Դու գնա՜, ես ամաչում եմ:

- Երբ հեռանամ, մեկ է՝ ուրիշն է գալու նայի, արագացրո՜ւ:

Երբ արդեն ճարահատյալ բարձրացրեց կիսաքրքրված շրջազգեստը, Կամբալան զարմանքով տեսավ ժանեկավոր գեղեցիկ ներքնազգեստը, որ հատուկ չէր այստեղ բնակվող կանանց:

Առանց ոչինչ ասելու շուռ եկավ ու սպասեց:

Երբ նորից պառկեցին կրակի մոտ՝ իրենց տեղը, Լարիսան զգաց նրա շունչը ծոծրակին:

«Ահավոր է, կամաց-կամաց սովորում եմ այս դրությանը, սարսափելի է»:

Մտքերը նորից գնացին հեռու՝ դեպի իր առջև դրված խնդիրը:

«...Հաճախ ինքս իմ մեջ սկսում եմ չբարկանալ ամենակարող Աստծո վրա, որ չի կարողացել ստեղծել կատարյալ աշխարհ ու համարյա ամեն մի արարածի համար սահմանել է որոշակի անիմաստ վիշտ ու անվերջանալի թվացող տանջանքներ: Բայց ինչպիսի ողորմությամբ է Նա կարողացել սփոփել այն մարդկանց, որոնք բարեգութ ճակատագրի մասին գաղափար իսկ չունեն...ապրում են առնետների կյանքով, առնետների օրենքներով»:

Հանկարծ զգաց, հասկացավ, որ տղամարդու ձեռքը շոյում է կուրծքը: Փորձ արեց ձեռքը հետ վանել, բայց ականջին շշուկ լսեց.

- Եթե ես չլինեմ, ապա նրանցից մեկն ու մեկին բաժին կհասնես: Մի՞թե դա ես ուզում:

Հետույքին զգաց տղամարդու պիրկ անդամն ու թուլացած բաց թողեց տղամարդու ձեռքը:

Շուռ եկավ: Հասկացավ, որ այլևս ոչինչ չի կարող անել ու լաց լինելով՝ փակեց աչքերը:

Տղամարդն արդեն բացել էր կուրծքը ու նա մի անգամ զարմանքով նայում էր թանկարժեք կրծկալին:

Հետո գլխով մտավ կրծքերի արանքն ու ծածկեց մերկ, անուշահոտ մարմինը...

Դիմադրելն անօգուտ էր, սակայն փորձ արեց: Ոտքերը սեղմեց, շրթունքները փակեց, գլուխը շրջեց, բայց մի քանի վայրկյան հետո տեղի տվեց մտածելով, որ եթե դիմադրի կարող են մնացածը հարձակվել իր վրա:

Ժանեկավոր ներքնազգեստը շպրտվեց մի կողմ...

Կյանքում մտքով չէր անցել, որ այսպես կարելի է թքել մարդկային արժանապատվության վրա: Տղամարդու վավաշոտ բերանը փսլինքախառը լորձով լցոնում էր կուրծքը, փորը...

Շարունակելով անձայն լաց լինել՝ զգաց, որ մի պահ տղամարդն անշարժացավ... «Բոմժը» թքում էր ոչ միայն հոգու, այլ նաև՝ մարմնի մեջ:

Գլուխը մի կերպ շրջեց՝ չկարողանալով պահել սրտխառնոցը:

«Մի՞թե այսպես հնարավոր է ապրել: Բայց ապրում են, չէ՞»:

«Ես վաղը կփախչեմ այստեղից անվերադարձ: Կարող եմ գրել այդ չարաբաստիկ հոդվածը: Կստանամ այն գումարը, որն ինձ այնքան անհրաժեշտ է: Գրողի ծո՜ցը այս առնետների որջը: Ամբողջ մարմինս թաց է: Զզվում եմ ինձնից, իմ մարմնից, խմբագրից, այս մարդ կոչված առնետներից, կողքս կենսական պահանջմունքները վայրենաբար բավարարված ասպետ կոչվածից, թյո՜ւ...»

Ոտնաձայներ լսեց: Վախից անմիջապես շուռ եկավ ու թևերով գրկեց կողքը պառկած տղամարդուն:

***

... Վախ՝ կյանքի նկատմամբ, վախ՝ վաղվա օրվա նկատմամբ, վախ՝ մոխրագույն, անիմաստ, անապագա գոյության նկատմամբ: Ի՞նչ ունենք ամեն օր: Ո՜չ դրամ, ո՜չ աշխատանք, ընտանեկան բազմաթիվ խնդիրներ, քրեածին կենցաղ ամեն քայլափոխում, մարդիկ, որ թվում է՝ անհոգ ապրում են աղբակույտերում, քանդված շինությունների նկուղներում, սոված, անլվա, կիսահագնված՝ աղբամաններում հաց որոնում, բայց հույսով, որ կարող են արժանանալ Նրա մեծահոգի հովանուն ու նրա վերջին ողորմածությանը՝ ամեն ինչ վերափոխելու...

***

Երբ աչքերը բացեց, արդեն լուսացել էր: Մենակ էր նկուղում:

Կողքի կիսաքանդ սենյակից դուրս եկավ կանանցից մեկն ու նախկինում շրջազգեստ եղած փալասը վրան քաշելով՝ մոտեցավ:

Մի պահ Լարիսայի աչքին նա երևաց իր կորցրած ժանեկավոր ներքնազգեստով:

Ձեռքով շոշափեց կոնքերը: Մերկ էր:

- Պետք է գնալ հաց, մթերք, գինի հայթայթելու, թե չէ գիշերը կմնաս սոված, կրակի կողքը տեղ չես ունենա, ու քո այդ Կամբալան էլ չի կարող օգնել քեզ: Կմնաս դրսում: Այստեղ այդպես է ընդունված:

***

Խմբագիրը կարծես ուրախությամբ չընդունեց նրան:

- Ի՞նչ է, երկու օրում վերջացրի՞ր:

- Այո, ես ընդամենը մեկ գիշեր եմ մնացել այնտեղ: Մի՛ ամբողջ օր մաքրվում էի այդ դժոխքից: Ո՞ւր ուղարկեցիք ինձ: Սա էլ՝ ձեռագիր նյութը: Բավականին լավ է ստացվել՝ իմ կարծիքով:

- Հասկանո՞ւմ ես, Լարիսա՜, մեկ ժամ առաջ արդեն տպագրության ներկայացվել է այդպիսի հոդված: Հիմա հեղինակը կբերի ստորագրության:

Առանց դուռը թակելու ներս մտավ մի տղամարդ:

Լարիսային ուշադրություն չդարձնելով՝ խմբագրին մեկնեց թղթերի մի կապոց:

- Ահա՜ «Առնետների որջը»՝ վերջնական տարբերակը, ստորագրե՜ք խնդրեմ: Մնացածը, ինչպես պայմանավորվել ենք, Կամբալա՜, Կամբալա՜:

Այդպես էլ առանց նրա կողմը նայելու՝ դուրս եկավ սենյակից:

***

Ինչ նախատեսված է յուրաքանչյուրիս, պետք է լինի:

Պայքարես, թե ոչ, միևնույն է՝ ոչինչ չես փոխի:

... Շնորհակալությո՜ւն քեզ, Տե՜ր Աստված, ամբողջ Մարդկության անունից:

Իմ ծնրադրյալ խոնարհումը Քեզ այս անմոռանալի հոգատարության համար ... որ կանք ու ապրում ենք հենց այսպես...

***Ստեփան ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ***
***(Ստեփան Ումառ)***

# ՕՏԱՐՆԵՐԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

Մենք հիացած ենք Հայաստանի հնամենի մշակութային փառքով: Չինաստանում հին ձեռագրերի այսպիսի հավաքածու խիստ սահմանափակ քանակություն գոյություն ունի:

**Մաո Դուն**

Իմաստասիրական և պոեզիայի սրբատաշ գքրերը շարունակում են ապրել այստեղ, ինչպես չորացված վարդերը, դեռևս լի անշոշափելի սերմով:

**Պաբլո Ներուդա**

# Թուրքական պատմական նոր ֆիլմում պատմական անհերքելի փաստերն ու եղելությունները ներկայացվում են ընտրովի

«1453 թ. զավթում». այսպես է կոչվում թուրք ոչ անհայտ սցենարիստ, դերասան, պրոդյուսեր և ռեժիսոր Ֆարուկ Ակսոյի նկարահանած պատմական վերջին ֆիլմը, որի համաշխարհային պրեմիերան կայացավ ընդամենը մի քանի ամիս առաջ: Անցած կարճ ժամանակահատվածում ֆիլմն արդեն դիտել են և կդիտեն աշխարհի բազմաթիվ երկրների միլիոնավոր մարդիկ: Ոչ ոք չի ասի, թե այն գրավիչ ու հետաքրքիր չէ. հիանալի, ճշմարտագույնս ներկայացված են հեռավոր ժամանակների պատմական կոլորիտը, միջավայրը, հերոսները, սովորական մարդիկ, նրանց նիստուկացը, հագուստը, դրվատանքի արժանի են դժվարագույն տեսարանների «թեթև» նկարահանումները, այն է` տքնաջան համառությամբ, անասելի դժվարությունների հաղթահարմամբ` ռազմական հսկայական նավերի կառուցումը, հսկա թնդանոթների ձուլումը, դրանց սարերով ու ձորերով Կոստանդնուպոլիս տեղափոխումը հարյուրավոր եզների ու հազարավոր մարդկանց ուժերով, Սրբազան քաղաքի պաշարումը, ամենօրյա դիվային հրետակոծություննները ու հարձակումները, պատերազմական արյունալի դրվագները, երկու կողմերի հերոսների սխրագործությունները, դաժանագույն կոտորածները, մահերը... Դիտարժան է դերասանների /հիմնականում` թուրք դերասաններ են/ համոզիչ, հուզիչ, վարպետ խաղը... Այնուամենայնիվ, գովեստի արժանի այս ամենը խամրում, առ ոչինչ են դառնում, երբ տեսնում ես, որ ֆիլմում խեղաթյուրված են, ստույգ չեն պատմական փաստերը, գուներանգի մեջ են ու ոչ ռեալիստական մի շարք կերպարներ, այդ թվում` գլխավոր հերոսի` երիտասարդ, անզսպելի փառատենչ, մարդատյաց զավթիչ Մահմուդ երկրորդ սուլթանի կերպարը, ում չարանենգ, չարաղետ հանճարի շնորհիվ ու առաջնորդությամբ թուրք բարբարոսներին հաջողվեց 50-ից ավելի օրերի պաշարումից հետո 1453 թ. մայիսի 9-ին վարջնականապես գրավել Բյուզանդական կայսրության և այն ժամանակվա աշխարհի սրբազնագույն մայրաքաղաք, քրիստոնեության պատվար Կոստանդնուպոլիսը: Պատմությանը քիչ թե շատ ծանոթ մարդուն, անշուշտ, հայտնի է Մահմուդի արյունռուշտ էությունը, որը ցայտունորեն երևակվում է գահակալման հենց առաջին օրերից. Հոր` սուլթան Մուրադի մահից հետո թեև նրան առանց առարկության ճանաչում են կայսրության տիրակալ, սակայն նրա առաջին վճիռները ցույց են տալիս, թե որքան ահավոր է նոր սուլթանի դաժան վճռականությունը: Իր արյունակից հնարավոր մրցակիցներին մեջտեղից վերացնելու և նրանցից ազատվելու նպատակով հրամայում է լողարանում խեղդել անչափահաս եղբորը, սպանվածի ետևից էլ մյուս աշխարհին է ուղարկում վարձված մարդասպանին: Այս ամենի մասին հենց առաջին կադրերում «խոհեմաբար» քար լռություն է տիրում ֆիլմում: Որովհետև ֆիլմը ստեղծողները և նկարահանման համար 17 մլն դոլար հսկայական գումար հատկացնողները նպատակ են հետապնդել իրենց տիրակալին ներկայացնել ոչ թե այնպես, ինչպիսին որ եղել է իրականում, այլ այնպես, որ ի դերև հանվի հայրենասեր, հումանիստ, «խաղաղ նվաճումներով» աշխարհին հայտնի թուրքը` ի դեմս ազգի կերպարը խտացնող, «խաղաղասեր», «մարդկայնության ջատագով անվեհեր մարտիկ» միապետի: Ֆիլմում էլի շատ բաների մասին լռություն է տիրում, շատ «անարժեք» փաստեր անտեսվել են:

Մեծ գրող, հումանիստ Ստեֆան Ցվայգը փառավորապես ճանաչում է թուրքին, արյունարբու Մահմուդի էությունը, և «Մարդկության աստեղային ժամերը» գրքում ճշմարտապատում ներկայացնում է. «Մահմուդը բարեպաշտ և մոլագար, տաքարյուն է և նենգամիտ, ուսյալ մարդ է և սիրում է արվեստ, նա Հուլիոս Կեսար և հռոմեացիների վարքագրությունները կարդում է բնագրով, և այդ ամենի հետ միասին բարբարոս է և արյունը թափում է ջրի պես: Չարագուշակ, թութակի կտուցի նման կեռ քիթ ունեցող այս մարդու մեջ համադրվում են անխոնջ աշխատավորը, անվեհեր զինվորն ու երկերեսանի դիվանագետը, և բոլոր այդ վտանգավոր ուժերը խտացված գործում են հանուն մի նպատակի. գերազանցել իր նախորդներին` պապ Բայազետին, Մուրադ հորը, որոնք առաջին անգամ Եվրոպային ցույց տվեցին թուրքական նոր ազգի ռազմական գերազանցությունը»: Կա՞ այս ամենը ֆիլմում: Մասամբ: Եղածն էլ մի այլ լույսի ներքո: Այն տպավորությունն ես ստանում ֆիլմից, որ ստեղծողները համայն աշխարհին կարծես ուզում են հավատացնել, որ իր հազարամյա մշակույթով սրբագործված, Եվրոպայի համար պատվի խորհրդանիշ քաղաքը զավթելով, քրիստոնեական սքանչելագույն տաճար Սուրբ Սոֆիան մզկիթի վերածելով` թուրքերը, իրենց անվեհեր առաջնորդ Մահմուդի գլխավորությամբ, սուրբ քաղաքը փրկել են «անօրեն» քրիստոնյաների ճիրաններից, Աստվածային նոր շունչ ու ոգի են հաղորդել, որովհետև այն իրենցն է եղել, իրենք են կառուցել, իսկ քրիստոնյաներն էլ անօրինաբար տնօրինում էին օրինված քաղաքը: Այդ ամենը եղել է նաև «ճշմարիտ» քրիստոնյաների...սրտով, նրանց կամքով և ցանկությամբ...

Պաշարման սկզբից անցել է վեց շաբաթ, անկոտրում է, համառ է Մահմուդը: Վճռական գրոհը նշանակում է մայիսի 29-ին: Նա, իբրև հմուտ հոգեբան, քաջ գիտի իր ազգակիցների էությունը, գիտե` ինչով կարող է բորբոքել 150 հազարանոց բանակի մարտական ոգին: Պատմությունն է փաստում /բայց ոչ ֆիլմը/. նա տալիս է արյունարբու մի խոստում, որը` ի պատիվ և ի անարգանք իրեն` ամբողջովին կատարում է: Մահմուդը երդվում է ալլահի և 4.000 մարգարեների անունով, հոր ոգով, զավակների կյանքով և իր սրով, որ քաղաքն առնելուց հետո զինվորներին շնորհում է երեքօրյա ...անսահմանափակ թալանի ու կողոպուտի իրավունք: Այսինքն` այն ամենը, ինչ կա անառիկ պարիսպների ներսում` տներ, գույք, ամեն տեսակ բարիք, զարդեր, թանկագին քարեր, փող ու գանձ... տղամարդիկ, կանայք, երեխաներ, ամենը, ամենը կպատկանեն փառապանծ զինվորներին: Զինվորները մոլեգին ցնծությամբ են լսում արյունռուշտ խոստումը, նրանց աղաղակները` «յազմա, յազմա» /կողոպուտ/, հասնում են երկյուղած բնակիչներին: Նրանց հույսը լիովին մարում է, երբ Ոսկեղջյուր ծովախորշում ցամաքից հայտնվում են թուրքական ռազմանավերը /ռազմական աննախադեպ այդ փայլուն մտահղացման և իրականացման հեղինակը «չար» հանճարն է` Մահմուդը/, իսկ քաղաքի անառիկ պարիսպներում երևում են առաջին ճեղքերը, որոնք բացվել էին այն ժամանակների համար հզորագույն թնդանոթների ամենօրյա զարկերից: Ի դեպ, այդ թնդանոթները ձուլվել էին հունգար զինագործ Ուրբանի /այդ անունը չի՞ հիշեցնում Հունգարիայի վարչապետ Օրբանին/ ղեկավարությամբ, ով թուրքերի մոտ ծառայության էր անցել ավելի մեծ վճարի դիմաց, այն, ինչը չէր կարողացել ապահովել վերջին կայսր Կոստանդինոսը: Թուրքական բարոյախոսության համընդհանրեցման տեսակետից ուրույն ասելիք ունի Ուրբան զինագործի դստեր հնարովի կերպարը: Իբր թե` եվրոպացիները աշխարհի երեսից ջնջել են բալկաններում գտնվող թուրքական մի գյուղ /եթե Բալկանները չէին գրավել կոտորածներով, թուրքերն ի՞նչ գործ ունեին եվրոպական երկրում/, ոչնչացրել են բնակիչներին, կոտորածից փրկվել է հերոսուհին և Կոստանդնուպոլսի ստրկաշուկայում վաճառքի հանվել: Նրան տեսել է Ուրբան զինագործը, գնել է և դարձրել իր աղջիկը: Աղ-ջիկը մեծացել է, արդեն հիանալի տիրապետում է խորթ հոր փե-շակը, թնդանոթաձուլության մեջ անգամ նորամուծություններ է մտցնում, և քանի որ ատում է քրիստոնյաներին, լծվում է Սրբազան քաղաքը զավթելու, ոչնչացնելու «սուրբ» գործին, լիակատար ընդունելով Ուրբանոս հոր «մարգարեությունը»` «Քանի Կոսատանդնուպոլսի պարիսպները չեն կործանվել, մենք հանգիստ չենք ունենա...»: Պաշարված քաղաքացիներին հայտնի է դառնում, որ ուշանում է լատինական պետությունների, Եվրոպայի օգնությունը, խոստացված օգնությունից հրաժարվել են նաև հունգարները /դարձյալ հունգարացիները/: Գրավված քաղաքում թուրքական վայրագ խժդժությունները պատմիչները, ի հակառակ ֆիլմն ստեղծողների, նկարագրել են ամենայն մանրամասնություններով. «Ալան-թալանի հետ միասին մոլեգնում են անիմաստ ավերածությունները, կոտորածն ու ջարդը, փշուր-փշուր են արվում հունական հոյակապ քանդակները, ոչնչացվում են դարերի իմաստությունը խտացնող գրքերը, գալիք սերունդների համար պահպանվելիք հունական մտքի եւ պոեզիայի անգին գոհարները քամահրանքով նետվում են կրակի մեջ...»: Մնացածը կարելի է երևակայությամբ լրացնել: Բայց այս ամենի մասին որևէ դրվագ ֆիլմում չենք գտնի: Փոխարենը` գրավման օրը գլխավոր դարպասից քաղաք է մուտք գործում սուլթան Մահմուդը, հպարտ է ու լրջախոհ, անցնում է փողոցներով, իսկ թալանի ու կոտորածի ոչ մի հետք բոլորովին չկա: Սպանված է Կոստանդինոս կայսրը: Իրենց կայսեր մահը ողբացող մարդկանց սրտառուչ հանձնարարում է` ձեր իմպերատորին թաղեք` ինչպես որ

➲19

# Սոկրատես



Իմ խորհուրդը ձեզ՝ ամուսնացե՛ք. եթե լավ կին գտնեք, կերջանկանաք, իսկ հակառակ դեպքում՝ կդառնաք փիլիսոփա...

***

Ամենքին հայտնի է Սոկրատեսի «Ես գիտեմ, որ ոչինչ չգիտեմ» ասույթը, սակայն Պլատոնի վկայությամբ՝ Սոկրատեսը սիրում էր ասել, որ, այնուամենայնիվ, մի բանում ինքը վարպետ է՝ էրոտիկայում՝ սիրո արվեստում: Ընդսմին սիրո հարցերում Սոկրատեսն իր ուսուցիչն էր համարում Սաֆֆոյին...

***

Ընկերների հետ երկար փիլիսոփայական զրույցից հետո երեկոյան Սոկրատեսը վերադառնում է տուն, ուր կինը՝ Քսանտիպան, դիմավորում է նրան անեծքներով եւ գոռումգոչյունով, իսկ այնուհետեւ՝ մեկ դույլ ջուր է շփում փիլիսոփայի վրա: Սոկրատեսը հանգիստ է արձագանքում.

- Բնական է... Որոտին անձրեւ է հաջորդում...

***

Մի օր Սոկրատեսին հյուր եկավ ընկերներից մեկն ու ասաց.

- Ես ուզում եմ քեզ մի բան պատմել մեր ընդհանուր ծանոթներից մեկի մասին:

- Սպասիր մի պահ, - ասաց Սոկրատեսը:

- Նախքան պատմելդ հարկ է, որ քո մտքերը եռակի զտում անցնեն: Ասա ինձ, դու լիովին վստա՞հ ես, որ այն, ինչ պատրաստվում ես ասել, ճշմարտություն է:

- Ոչ, - պատասխանեց մարդը, - ես դա լսել եմ ուրիշներից:

- Այսինքն՝ վստահ չես լսածիդ ճշմարտացիության մեջ... Երկրորդ՝ այն, ինչ պատրաստվում ես ինձ հաղորդել, բարիք պարունակո՞ւմ է իր մեջ:

- Հակառակը, վատ լուր է, - պատասխանեց ծանոթը:

- Եվ երրորդ՝ ես անձնապես կարո՞ղ եմ օգուտ քաղել քո պատմածից, - հարցնում է Սոկրատեսը:

- Կարծում եմ, որ ոչ:

- Ուրեմն, բարի մարդ, եթե դու ինձ պատրաստվում ես պատմել մի բան, որը սուտ է, չարիք եւ անօգուտ, ապա ես կարիք չունեմ հաղորդ լինելու քո լսածին...

Սոկրատեսն այդպես էլ չիմացավ, որ իր կին Քսանտիպան դավաճանում էր իրեն լավագույն ընկերոջ հետ...

***

Անցորդը հարցնում է Սոկրատեսին.

- Քանի՞ ժամվա ճանապարհ է մնում մինչեւ քաղաք հասնելը:

- Ճամփադ շարունակիր, - նետում է փիլիսոփան...

Շվարած անցորդը շարունակում է իր ճամփան: Քսան քայլ փոխելուց հետո Սոկրատեսը ձայնում է մարդու ետեւից.

- Երկու ժամ:

- Ինչո՞ւ անմիջապես չասացիր, - զարմացավ անցորդը:

- Իսկ ես ի՞նչ իմանայի, թե դու ինչ արագությամբ ես քայլելու, - ասում է Սոկրատեսը...

***

Երբ Սոկրատեսն ընթերցեց Հերակլիտեսի երկը, ասաց.

- Այն, ինչ ես հասկացա, սքանչելի էր, իսկ այն, ինչ հասկանալ չկարողացա, պետք է, որ նույնպես սքանչելի լինի...

***

Տեսնելով, որ Սոկրատեսը արմտիքով է սնվում, ծանոթներից մեկն ասաց նրան.

- Եթե ծառայեիր մեր տիրակալին, ստիպված չէիր լինի արմատներով սնվել:

- Իսկ եթե դու բավարարվեիր արմատներով, ստիպված չէիր լինի ծառայել նման տիրակալի, - պատասխանում է Սոկրատեսը...

***

Աշակերտներից մեկը հարցրեց Սոկրատեսին, թե ինչո՞ւ երբեք տխրության նշույլ անգամ չի հայտնվում նրա դեմքին: Սոկրատեսը պատասխանում է.

- Ես չունեմ այնպիսի մի բան, որը կորցնելով տխրություն ապրեի...

***

Ահա թե ինչ կարծիքի էր Սոկրատեսը ունելիքի մասին... Երբ անցնում էր շուկայի լի վաճառասեղանների կողքով, զարմացած ասում էր. «Ինչքա՛ն իրեր կան աշխարհում՝ առանց որոնց կարելի է ապրել»... Սոկրատեսը համոզված էր, որ ունելիքն ախորժելի է այն ժամանակ, երբ չես սպասում երկրորդ ուտեստին...

***

Ինչպես գիտեք, Սոկրատեսին մահապատժի դատապարտեցին աստվածների հանդեպ անհարգալից վերաբերմունքի եւ երիտասարդների բարքերն այլասերելու մեղադրանքով: Պարզվում է, որ այս զրպարտանքի առիթ է հանդիսացել Արիստոփանեսի «Ամպեր» կատակերգությունը, որտեղ Սոկրատեսը հանդիսատեսին ներկայանում էր Զեւսի գոյությունը հերքող սոփեստի կերպարանքով: Մեծ փիլիսոփայի մահվան պատճառ դարձավ հակառակորդների ծաղրը...

***

Մահվան վճռի կայացումից հետո Սոկրատեսն իր վերջին խոսքում դիմում է համաքաղաքացիներին.

- Դե ինչ, ես հեռանում եմ մահանալու համար, իսկ դուք մնում եք՝ ապրելու: Մարդուս հայտնի չէ, թե ո՞րն է այս երկու դերերից ավելի շահեկան...

## Համբերություն



Մի անգամ իր բոլոր նպատակներին հասած մարդուն հարցնում են, թե ինչում է նրա հաջողության գաղտնիքը...

- Համբերության մեջ, հարգելիս!!!

- Բայց ես կարող եմ շատ իրավիճակներ ցույց տալ, երբ համբերությունը պարզապես չի կիրառվում, - պատասխանում է զրուցակիցը:

- Օրինակ, - հարցնում է այդ մարդը:

- Օրինակ մաղով ջուր կրելիս...

- Դուք սխալվում եք, հարգելիս, պարզապես հարկավոր է վերցնել մաղը և սպասել ձմռան գալստին...

18➲

ձեր կրոնն է պահանջում, պատվով-հարգանքով հուղարկավորեք... Ապա ուղիղ ընթանում է դեպի Սուրբ Սոֆիայի տաճար: Ահաբեկված քրիստոնյաները տաճարում վերջին աղոթքն են հնչեցնում առ Աստված... Եվ ահա, «Աստված» ինքը՝ Մահմուդի տեսքով, մտնում է տաճար: Բոլորն ահուսարսափի մեջ են, սպասում են կոտորածի սուլթանական դաժանագույն հրամանին: Բայց նա մի՞թե այդ նպատակով է գրավել քաղաքը, մի՞թե չի եկել քրիստոնյաներին (երևի իրենց կայսրից, եկեղեցու հայրերից) փրկելու խոստումներով և փրկություն բերելով: Մոտենում է սարսափած մարդկանց,ժպտում է, մի կին՝ երեխան գրկին, մոտենում է հանդարտ ու հեզ սուլթանին, սուլթանը գրկում է անմեղ երեխային, երեխան համբուրում է մարդասեր մարդասպան սուլթանին... Մինչև անգամ ժպտում է «մարդասեր», «խաղաղասեր» սուլթանը, հանդարտ հնչում է նրա մարդասիրության, հանդուրժողականության մեծ լիցքեր պարունակող «պատմական» կոչը՝ «Մի վախեցեք, քրիստոնյա հավատացյալ ժողովուրդ, մեր հոգիները նույնն են ու հիմա համատեղվեցին... Մեր ճակատագրերը նույնացան... Թողնում եմ, որ պահպանեք ձեր հավատը, դուք այդ իրավունքն ունեք... և այլն, և այլն»: Հիմա լսենք պատմաբաններին՝ այսպե՞ս է եղել իրականում: Ստեֆան Ցվայգ. «Հաջորդ օրն իսկ արհեստավորները հրաման են ստանում տաճարը մաքրել նախկին կրոնի նշաններից, զոհասեղանները դուրս են բերվում, ծեփվում-ծածկվում են բարեպաշտական պատկերները, և Սուրբ Սոֆիայի գմբեթի բարձրաբերձ խաչը, որ հազարամյակներ շարունակ թևերը կարկառել էր այս աշխարհը բովանդակ ընդգրկելու համար, խլածայն գետին է տապալվում: Խաչի անկումից հետո Արևմուտքն է ցնցվում: Եվրոպան սարսուռով է գիտակցում, որ իր բութ անտարբերության հետևանքով մի ավերիչ զորություն դարեր շարունակ պետք է կապի ու կաշկանդի Եվրոպայի ուժերը: Հազարամյակներն, ավաղ, անզոր են ետ բերելու մեկ օրում կորցրածը»:

Ահա այսպիսի ֆիլմ, ֆիլմ, ուր, մեղմ ասած, ընտրովի են ներկայացվում պատմական անհերքելի փաստերն ու եղելությունները: Իսկ այլ բան սպասելն իհարկե իզուր կլիներ:

**Գագիկ ԱՆՏՈՆՅԱՆ**

